1916 № 28.—Յուլիսի 10 ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ — ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ — 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 2 ր. 50 կ. Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ր., կէս տարուան 2 ր. Արտասահման՝ տարեկան 5 ր., կէս տարուան 3 ր.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արտասարդեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Գրաւոր հասցէն.—Тифлисъ, „Амбавaберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։

Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ԿԱՐԵՒՈՐ ԽՆԴԻՐ

Համաշխարհային պատերազմը ամեն տեղ և ամենքի ուշադրութիւնը կենտրոնացրել է իր վրայ։ Խօսում են, վիճում և գրում գլխաւորապէս կամ միմիայն պատերազմի մասին։

Երեւոյթը բնական է. պատերազմի հետ կապուած է և մարդկային կեանքի և ամբողջ ազգերի ու պետութիւնների գոյութեան խնդիրներ։

Այդ հարցերի առաջ, ի հարկէ, նսեմանում են կեանքի միւս պահանջները և արտայայտութիւնները։

Սակայն չը նայած պատերազմի այդ ճնշող դերին և ոյժին՝ կեանքի անիւը դարձեալ պտոյտ է գալիս իր ամբողջութեամբ և ահա տեսնում ենք իրենց ընթացքի և զարգացման մէջ թէ տնտեսական, արդիւնաբերական ու առեւտրական, թէ կրթական, թէ գիտական ու գրական, և թէ այլ տեսակ խնդիրներ, որոնց ամբողջութիւնը կազմում է այն, ինչ անուանւում է կեանք։

Տարբերութիւնը միայն այն է, որ շնորհիւ պատերազմի՝ կեանքի այդ կողմերը խաղաղ ժամանակի հետ համեմատած թոյլ են զարգանում և առաջուան հետաքրքրութիւնը չեն զարթեցնում։

Փայլուն ապացոյց այդ մտքի կարող են լինել հենց մեր Կովկասին վերաբերեալ նորերս լուծուած երկու խոշոր հարցերը։

Տասնեակ տարիների ընթացքում Կովկասը ամեն ջանք գործ էր դնում ունենալու գէթ մէկ բարձրագոյն դպրոցական հաստատութիւն։ Այդ նպատակով քանիցս խորհրդակցութիւններ ու ժողովներ են տեղի ունեցել, քանիցս դիմումներ են եղել բարձրագոյն կառավարութեան ու նիւթական միջոցներ են առաջարկուել երկրի կողմից, բայց այդ բոլոր աշխատանքները ապարդիւն էին անցնում։ Կառավարութեան ղեկավարները միշտ խորթ աչքով էին նայում և թերահաւատութեամբ վերաբերւում Կովկասի բազմալեզու և բազմակրօն ազգաբնակութեանը, թէեւ նա Ռուսաստանի ներքին նահանգների ժողովուրդի հետ միշտ համահաւասար պարտականութիւններ է կատարել անձնուիրութեամբ, բայց համահաւասար իրաւունքներ դժբաղդաբար չի վայելել։

Կովկասի նախորդ Փոխարքայ Կոմս Վարանցով Դաշկովն ըմբռնեց այդ անարդարութիւնը և մեծ ջանքերով

կարողացաւ ստանալ Կովկասում բարձրագոյն բազմարուեստեան դպրոց հիմնելու իրաւունքը։

Սակայն չլուծուեց խնդիրը։ Կառավարութիւնը տուեց իրաւունք, բայց չը տուեց նիւթական միջոցներ և ահա թէ ինչու գործը մինչև օրս մնացել էր մեռած կէտի վրայ։ Պետական Դումայի վերջին նստաշրջանում Կովկասի պատգամաւորների արտասովոր ջանքերի շնորհիւ Դուման ընդունեց Թիֆլիսում բարձրագոյն բազմարուեստեան դպրոց հիմնելու օրինագիծը։

Համարեա միաժամանակ Կովկասը արժանացաւ և մի ուրիշ բարձրագոյն դպրոցի, այն է՝ բժշկական բաժանմունքի (ֆակուլտետ), կից Թիֆլիսի բարձրագոյն կանանց դասընթացքների։

Եթէ ներկայումս չը լինէր արիւնահեղ պատերազմը, եթէ մեր կեանքը իր բնական ընթացքով առաջանար, այս երկու կարևորագոյն հարցերի բարեյաջող լուծումը, որոնց մասին Կովկասը միշտ երազել է, ազգաբնակութիւնը մեծ խանդավառութեամբ ու հրճուանքով պէտք է ընդունէր։

Բայց այդ չը նկատուեց. ժամուլը մեծ մասամբ սահմանափակուեց լուրեր հաղորդելով, իսկ հասարակութեան վրայ էլ՝ ստացուած տեղեկութիւնը մի առանձին տպաւորութիւն չը թողեց։

Զարմանալի՜ բան։

Կովկասի երկարամեայ ակնկալութիւնը, նրա իղձը, նրա ջերմ փափագը իրագործւում է և ժողովրդի կողմից ոչ մի նկատելի ուրախութիւն, ոչ մի առանձին հետաքրքրութիւն։ Ճիշտ է, տպաւորութեան արտայայտութիւնը աւելի զգացմունքի խնդիր է. բայց եթէ մենք թոյլ տուինք մեզ այդ մասին մի քանի խօսք ասելու, մեր նպատակն էր բնորոշելու մեր անցողական ժամանակը և կրկնելու, որ պատճառը պատերազմն է։

Հարցի էականը կայանում է նրանում, որ մենք մօտ ապագայում կունենանք բարձրագոյն դպրոցներ, և մեր երիտասարդութեան մի մասը հնար կունենայ իր հայրենի երկրում ստանալ բարձրագոյն ուսում և կազատուի այն նեղութիւններից և ֆիզիքական քայքայումներից, որին անխուսափելի կերպով ենթարկւում է նա հիւսիսային սառնամանիքում։

Ուրախալի է, որ մենք ունենալու ենք բարձրագոյն դպրոցներ, բայց այդ դպրոցները պէտք է այնպէս լինեն, որ բոլոր ուսումնածարաւներին բաւարարութիւն տան։

Ներկայ տիրող կարգով այդ դպրոցներին արժանանալու են գիմնազիա և այլ համանման պետական դպրոցաւարտները։

Եթէ այդ եղանակով ընդունելութիւն կատարուի, այդ դէպքում դուրս կը մնան համահաւասար ուսումով մեր ազգային դպրոցաւարտները, որը շատ ցաւալի կը լինի։

Ցանկալի է, որ այդ նոր բացուելիք բարձրագոյն կրթական հաստատութիւնները հաւասար կերպով յագեցնեն բոլոր ուսումնածարաւ երիտասարդութիւնը. ցանկալի է, որ այդ հաստատութիւնների դռները լայն բացուեն թէ պետական և թէ ազգային միջնակարգ դպրոցները աւարտողների առաջ։

Այդ է պահանջում արդարութիւնը, այդ են պահանջում և մեր երկրի իսկական շահերը, եթէ ընդունենք, որ մեր լաւագոյն ապագան կախուած է ուսման լայն տարածումից։

Այս հարցն արժանի է Ամենայն Հայոց Վեհափառ Կաթողիկոսի ուշադրութեան, որի իրաւասութեան ու հովանաւորութեան տակ են գտնւում մեր կրթական հիմնարկութիւնները. այդ հարցով պէտք է զբաղուեն և մեր միջնակարգ դպրոցների վարչութիւնները։

Ո՛չ մի արդարացի հիմք չը կայ, որ Էջմիածնի ճեմարանը, թեմական դպրոցներն աւարտողները չ՚ընդունուեն բազմարուեստեան բարձրագոյն դպրոցը, իսկ Գայիանեան, Յովնանեան և սրանց նման միւս օրիորդաց դպրոցները աւարտողները չ՚ընդունուեն բժշկական բաժանմունքը։

Հարկաւոր է օր առաջ խնդիր յարուցանել և ստանալ իրաւունք, որ մեր միջնակարգ դպրոցաւարտները կարողանան մտնել պետական որոշ բարձրագոյն դպրոցները։

Իսկ մեր դպրոցների ծրագրի մէջ ցանկալի է մտցնել որոշ ու անհրաժեշտ փոփոխութիւններ, մանաւանդ լեզուի վերաբերմամբ.

Ահա մի խնդիր, որը շատ կարևոր է մեզ համար և որով անհրաժեշտ է այժմեանից լրջութեամբ զբաղուել։

Ս. Յ.

# Համաշխարհային պատերազմը

## ՏԱՃԿԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Մամախաթունի վերստին գրաւումից յետոյ՝ Բաբերդի նման կարևոր հանգոյցը կորզւում է թշնամու ձեռքից և յենարան է դառնում մեր քաջարի բանակին։ Կարին այլևս ապահովուած է, Գիւմիւշխանէն օրէցօր ռուս զօրքի ձեռքը անցնելու վրայ է և թշնամին ստիպուած է կծկուել դէպի արևմուտք։ Միաժամանակ կատարելապէս հիմնաւորուած պիտի համարել Լօրդ-Ջօրջի այն խօսքերը՝ թէ «Արևելքում և Արևմուտքում միացրած ուժերով յարձակումները խլեցին այլևս թշնամու ձեռքից նրա ձեռներէցութիւնը. անդառնալի կերպով խլեցին»։

Միւս կողմից Թիւրքիան օրհասական հարուած է ստանում Արաբիայի ապստամբութեամբ, որ հետզհետէ ծաւալւում է։ Ինչպէս հաղորդում է «Ռուս. Սլովօ» թերթը, Մէքքայի շէրիֆի զօրքերը, Մէքքան գրաւելիս՝ գերի են առել տաճիկ զօրքից 100 սպայ, մօտ 3 հազար զինուոր, 10 թնդանօթ և 16 գնդացիր։ Մէդինէն արդէն գրաւուած է, իսկ Սիրիայի մէջ Ջէմալ փաշայի գործած նախճիրն ու աւերածութիւնը ոտքի է հանել Սիրիացիներին ևս։

Վերջին պաշտօնական տեղեկութիւնները տաճկական ռազմաբեմից յայտնում են, որ Կովկասեան բանակի աջ թևը, Ջևիզլիկի և Բայբուրդի շրջանում և դէպի արևմուտք նորից առաջ անցնելով՝ ամեն տեղ տապալեց թշնամուն։ Վերջին օրերս մեր զօրամասերը գերել են 85 թիւրք սպայ, 1200-ից աւելի ասկեր, 1 ծանր թնդանօթ և 5 գնդացիր ևս։

## ԱՐԵՒՄՏԵԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

*Աւստրա-գերմանական ճակատում թշնամու ամբողջ ջանքերը կենտրոնացած են՝ պաշտպանելու Կովելի ամրացած շրջանը, իսկ ֆրանսական ճակատի վրայ՝ Պերրոնի հանգոյցային կէտը։ Գերմանացիները շատ լաւ զգում են Պերրոնի կորուստի վտանգը և աշխատում են ամեն գնով պահպանել այն յաճախակի յարձակումներով, որպէս զի բարելաւեն իրենց դիրքերը Սոմմի եզերքներին։ Համեմատաբար աւելի պակաս կորուստների գնով՝ մեր դաշնակիցները շարունակում են թէև դանդաղ, բայց յամառաբար պատռել գերմանական ճակատը։ Անգլիացիք արդէն իրենց ռազմական ճակատը առաջ են շարժել մինչև Լոգևալ գիւղը և գրաւել են այդ, որ գտնւում է Սոմմա գետից դէպի հիւսիս՝ 9 կիլոմետր հեռու։ Անգլիական բանակի այժմեան այդ յաղթանակը ստիպել է թշնամուն անցնել պաշտպանութեան երկրորդ գծի վրայ։ Այդպիսով, Սոմմայի գետափներին դաշնակիցները ունեցել են յաջողութիւններ։ Վերդէնի շրջանումն էլ գերմանացիների ուժերը սկսել են ջլատուել, որովհետև ֆրանսացիք եռանդուն շարժումներ են ձեռնարկել Մաասի երկու ափերի վրայ։*

*Ինչ վերաբերում է Ռուսական արևմտեան ճակատին՝ ըստ հաղորդագրութեան Բարձրագոյն Սպայակոյտի, կարևոր անցքեր են տեղի ունենում Ռիգայի և Լուցկիի շրջաններում, այլև ձախ թևի վերջին ծայրերում։ Եթէ, ինչպէս ասում են հեղինակաւոր ռազմագէտները, համադրենք այդ ամենը Կեմերնայի արևմուտքում ունեցած մեր յաջողութիւնների հետ, այն ժամանակ հասկանալի կը լինի, որ այդ կողմերում հասունանում են մեծամեծ գործողութիւններ։ Առանձնապէս յամառ դիմադրութիւն է ցոյց տալիս թշնամին՝ Սարնի և Կովէլի կողմերը, սակայն մեր զօրքերը փշրել են դիմադրութիւնը և աւելի կնճռոտում են գերմանացիների պաշտպանողական ծրագրերը։ Թշնամին ստիպուած է մի կողմից դէպի միւս կողմը նետել իր ուժերը և այդպիսով թուլացնել իր շարժումները։ Ռուս զօրքը յաղթականօրէն առաջ է քայլում և արդէն նրա ձիաւոր վաշտերը երևացել են Կարպատների վայրէջքների վրայ, Պֆլանցեր-Բալդինի բանակի թիկունքում։*

# Ներքին տեսութիւն

## ԶՕՐԱԿՈՉ Ա. ԵՒ Բ. ԿԱՐԳԻ ԶՕՐԱԿԱՆԻ

*Բարձրագոյն հրովարտակ կառավարիչ Սենատին.*

*Անհրաժեշտ համարելով լրացնել պահեստի զօրամասերը և թիկունքի հաստատութիւնները և զօրեղացնել սանիտարական հաստատութիւնները մինոնեաներով՝ հրամայում ենք զօրակոչ անել կայսրութեան բոլոր նահանգներում, շրջաններում և քաղաքապետութիւններում. 1) Երկրորդ կարգի գուգազի զօրականների (ռատնիկ օպոլչենիա) զօրակոչի 1916 թուականից մինչև 1901 թուականինը հետը հաշուած. 2) Երկրորդ կարգի գուգազի զօրականներին մինոնեաներից 1916 թուականից մինչև 1906 թուականինը հետը. 3) Առաջին կարգի զօրականին 1915 թուականից մինչև 1893 թուականինը հետը. 4) Առաջին կարգի զօրականին մինոնեաներին 1916 թուականից մինչև 1893 թուականինը հետը հաշուած։*

*Զօրակոչի առաջին օրը վերոյիշեալ կարգերը սահմանել այս տարուայ յուլիսի 15-ը։*

*Կառավարիչ սենատը հարկաւոր կարգադրութիւնը կանի բագործելու։*

*Իսկականի վրայ Նորին Կայսերական Մեծութեան իսկական ձեռքով ստորագրած է*

«ՆԻԿՈԼԱՅ»

*Կայսերական կայան*

*4 յուլիս 1916*

*Հաստատել է պատերազմական նախարար գեն. ատ.-ինֆան. Շուվայև։*

## ՊԱՐՏԱԴԻՐ ԿԱՐԳԱԴՐՈՒԹԻՒՆ

*1) Կովկասի պատերազմ. շրջանի գլխաւոր կառավարիչ գեն. Ար. Վոլսկին յայտարարում է, որ Կովկասի բոլոր նահանգներում շաքար ունեցողները պարտաւոր են անմիջապէս յայտնել վարչութիւններին՝ իրենց ունեցած պաշարի քանակը թէ այժմ և թէ հետզհետէ։ Ինչպէս յայտնուել է իրեն, շատերը շաքարի մեծ պահեստներ ունեն և թաքցնում են, որպէսզի յետագայում թանգ ծախեն։ Այդպիսի զեղծարարները կենթարկուեն պատասխանատուութեան, 3,000 ռուբլ. տուգանքի և կամ 3 ամսուայ բերդարգելութեան։ Այս պարտադիր որոշումը բոլոր նահանգների և շրջանների համար է և յայտնուած է բոլոր նահանգապետներին։*

*2) Անդրկովկասի երկաթուղային գլխաւոր վարչութիւնը յայտարարում է, որ արգելւում է երկաթուղով փոխադրել՝ իբր ձեռքի ապրանք եայլն ամեն տեսակի սպիրտային խմիչքներ՝ մի անձի համար աւելի գործածելու չափով։ Անսաստողները կը տուգանուեն մինչև 500 ռ. և կամ կը պատժուեն մինչև 3 ամիս բանտարկութեամբ։*

*3) Նոյն գլխաւոր վարչութիւնը յայտարարում է, որ բացարձակապէս արգելուած է ճանապարհորդել առանց տոմսակի։ Անտոմսակ ճանապարհորդողը, բացի կրկնակի վճարից՝ կը տուգանուի 500 ռուբլիով կամ կը պատժուի 3 ամիս բանտարկութեամբ։*

## ԹԻՖԼԻՍԻ ՆԱՀԱՆԳԱՊԵՏԻ ԵՒ ՔԱՂ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ԿՈՉԵՐԸ

*Թիֆլիսի նահանգապետը, ամսիս սկզբներին քաղաքում տեղի ունեցող անկարգութիւնների առիթով հրատարակել է մի կոչ։ Այդ կոչի մէջ ասում է.*

*«Վերջին օրերս քաղաքի ծայրերում, թանգութեան պատճառով նկատուեց գլխաւորապէս կանանց ջղայնոտ դրութիւն։ Ոստիկանութիւնը տրամադրելի բոլոր միջոցներին էր դիմում, որպէս զի գրգռուած ամբոխը բիրտ գործողութիւնների չը դիմէ՝ առևտրականների դէմ։ Զանազան անձերի ցուցմունքով ոստիկանական պաշտօնեաները երևան էին հանում թաքցրած ապրանքներ և վաճառում էին ըստ սակագնի, այլև աչալրջօրէն հսկում, որ ապրանքները չը ծախուեն սակագնից բարձր։ Այդպէս շարունակուեց մինչև յուլիս 4-ի երեկոյեան ժամի 6-ը։ Այդ ժամանակ, ճոթեղէն (մանուֆակտուրա) ծախող մի խանութ կիսովին ենթարկուեց կողոպտման։ Երբ ես վրայ հասայ, գտայ գրգռուած մի մեծ բազմութիւն, առաւելապէս կանայք, որոնք շրջապատեցին իմ կառքը և սկսեցին գանգատուել, որ կեանքը չափազանց թանգացել է, որ առևտրականներից ոմանք օգտուելով սակագնի բացակայութիւնից, անասելի գներով են վաճառում կենսամթերքը և շատերն էլ ունեցած ապրանքը թաքցնում են։ Վերջապէս մի քանի կին յայտարարեցին թէ համբերութիւնից դուրս գալով, գանգատի էին եկել ինձ մօտ, բայց նրանց թոյլ չեն տուել և այլն»։*

*Այնուհետև նահանգապետը իր կոչի մէջ ապահովեցնում է ազգաբնակութեանը, որ վարչութիւնները ամեն միջոց ձեռք են առել՝ կանոնաւորելու համար անհրաժեշտ պիտոյքների գները և խնդրում է ազգաբնակութեանը՝ զսպել ինքնիրեն, չը դիմել բռնի միջոցների և թանգութեան մասին բոլոր գանգատները հասցնել իրեն անձամբ կամ գրաւոր։ Կոչը վերջանում է հետևեալ խօսքերով.—«Երևակայեցէք, թէ որքան են ուրախանում գերմանացիները ու միւս արտաքին թշնամիները։ Ուշքի եկէք։ Մի՛ թոյլ տաք, որ մեր թշնամիները հրճուեն»։*

*Նահանգապետը հետևեալ օրը հրատարակեց հետևեալ կոչը.*

*«Այսօր հնամեայ Թիֆլիսը իրեն խայտառակեց մի անջնջելի արատով։ Ամբողջ օրը, յամօթ Թիֆլիսի, խանութները կտրտում*

դաշտերում։ Անձրևից, ցրտից պաշտպանուելու համար, ստիպել են հենց իրենց՝ գերիներին խրամատներ փորելու և այնտեղ ծուարուելու։ Զէն ամաչել և անդթօրէն մեր գերիներից խլել են շոր, ոտնաման և նոյնիսկ զինուորական պարգևներ ու խաչեր, հակառակորդներին ծեծելով և հրացանադարկ անելով։

Սնունդն այնպէս է տրւում, որ գերի զինուորները ենթարկւում են դանդաղ, բայց թէ անդարձ քայքայման ու հիւծման։ Հնդախտաւորներին ու թոքախտաւորներին չեն բժշկում։ Խլում են մեր զինուորների ոտնամանները, տալով փայտից շինուած ոտնամաններ, որոնցով անհնար է անց ու դարձ անելը։

Պատիժները պակաս անխնայ չեն իրանց դաշնակից կարմիր լնէրների ու նման Վամպիրների գործելակերպից։ Զնչին պատճառներով կախում են մերոնց։ Կախուած դրութեան մէջ թողնում են այնքան, որ զոհի արիւնահոսութիւնը խանգարւում է և արիւնը սկսում է թափուել քթից, բերանից և այլն։ Այդ շարունակւում է մինչև ուշագնացութիւնը։ Հազիւ ուշքի եկած, նորից կըրկնում են այս զզուելի գործողութիւնը, մինչև որ ուշաթափ դրութեան մէջ տանում են հիւանդանոցը։ Առանց հացի ու կերակրի թողնելը շատ սովորական բաներ են Աւստրիայում։

Պուրգշտալում աւստրիացոց ենթասպան ծխախոտով է այրել քնած գերիների մատները։ Իսկ Վիսիլբուրգում սպան է նոյն ձևով այրել մեր զինուորների երեսները։

Ի վերջոյ, երբ քոյր Մասլենովան հրաժեշտ է տուել Պուրգշտալում իր հայրենակիցներին, զգացուած ու յուզուած ներկայ է եղել հազարաւոր գերիների «Վրէժ և վերջնական յաղթութիւն» գոչող ամբոխի մորմոքին... և հազիւ է իրան զսպել։

Ինչո՞ւ, ուրեմն, անձնուրաց ու քաջ մեր զինուորին չխրախուսենք օտար ու դաժան երկնքի տակ։

Սոված, տկլոր, բոկոտն ու ամեն բանի կարօտ գերի մեր եղբայրները յոյս են դրել մեզ վրայ։ Քաղաքների և Զեմսկի Միութիւնները արդէն ծանրոցներ են ընդունում ու հասցնում գերիներին։ Թող ամեն ոք մասնակցի այս ձեռնարկին։ Ծանրոցները պիտի ուղարկել այս հասցէով. Петроградъ, Конюшная 12, т—нъ 664—94։

Արամ Տօնեան

---

## «ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ԼՈՅՍ» ԳՐԱԴԱՐԱՆ-ԸՆԹԵՐՑԱՐԱՆԻ ՎԱՐՁՈՒԹԵԱՆ ԿՈՉԸ

1908-ի Օսմ. սահմանադրութիւնը Թիւրքահայ մշակութային կեանքը մասամբ ապահովելով՝ ծնունդ տուաւ ամեն կարգի ձեռնարկներու։

Վասպուրականը ամենէն առաջ մեծ թափով նետուեցաւ դէպի գործ և Վասպուրականի երիտասարդութիւնը 1908-ին հիմնած «Ազատութեան-Լոյս» գրադարան-ընթերցարանովն էր, որ ասպարէզ եկաւ օրգանական աշխատանք կատարելու։

Տարի մը առաջ էր, որ այդ հօկայական գրադարան-ընթերցարանը իւր հազարաւոր գիրքերով ու պարբերականներով զարկ կուտայ հայ կեանքի վերազարթնումին. այսօր, սակայն, մոխրացած է անիկա իւր հսկայական գրականութեամբ։

Վասպուրականի երիտասարդութիւնը ձեռնարկած է վերակազմելու այդ գրադարան-ընթերցարանը մօտիկ ապագայի վերածնութեան գործին նպաստելու համար։ Վերակազմուած վարչութիւնը այն հաստատուն յոյսն ունի, որ շուտով պիտի կանգնի ան, նորէն երկրին մէջ և այդ իսկ համոզումով կը դիմէ հայ հասարակութեան—թերթերու խմբագրութիւններուն, հեղինակներուն, հրատարակչական ընկերութիւններուն և ամեն հաստատութիւններուն, խնդրելով անոնցմէ աջակցութիւն թերթերով, գիրքերով և ուրիշ կարգի նուիրատուութիւններով։

1916, յունիս 18, Երևան։ Հասցէն՝ Эривань, Вехиловская ул. № 5. Грандъ Г. Каринянъ

---

## ԼՈՒՐԵՐ

Նախարարական խորհուրդի վերջին նիստին, լեհական հարցի հետ՝ հրէական հարցն էլ առաջադրուեց։ Ցանկութիւն յայտնուեց գործադրութեան դնելու իշ. Շչէրբատովի շրջաբերականը։ Վերջնական որոշումները կը լինին արտասահմանից Բարկ և Պակրովսկի նախարարների վերադարձից յետոյ։

—

Նախարարական խորհուրդը որոշել է վերահսկողութիւն հաստատել հասարակական բոլոր կազմակերպութիւնների վրայ։ Վերահսկիչ մարմին մասնակցելու կըհրաւիրուեն նաև ներկայացուցիչներ Քաղաքների և Զէմստվօյական Միութիւններից։

—

Ինչպէս յայտնի է, յուլիս 1-ից նշանակուած է գործադրութեան հանել կօշկեղէնի նոր սակագինը։ Ռուսաստանում արդէն երևում են հետևանքները։ Խոշոր առևտրականները արդէն շուկայից վերացրել են այն կօշիկները, որոնցով նրանք չեն կարող մեծ աշխատանք ունենալ ըստ սակագների։ Էժանագին կօշիկները նոյն իսկ առաջին օրերում սպառւում են և այլն։

—

Ռոստովում, ինչպէս հաղորդում է «Ռուս. Սլովօն», ձոթավաճառները իջեցրել են բոլոր ձոթերի գինը 15—20%։ Մանրավաճառները թէ այդտեղ և թէ Տագանրոգում յայտարարել են, որ պիտի վաճառեն այսուհետև պակասեցրած գներով։

—

Բարձրագոյն հրամանի համեմատ, որպէսզի անյապաղ ընթնուի Կովկասեան լեռնաշղթայով երկաթուղի անցկացնելու հարցը—ձեռնարկուած է ինժենէր Կոչինսկու նախագծի մանրամասն քննութեանը, որը և իրագործելու համար տեղական դրամատէրերից կազմակերպւում է մի խումբ։

—

Մուշից «Հորիզոնի» թղթակից Համօ Մակարեանը հաղորդում է.

Բժշկական գործը թէ քաղաքում և թէ դաշտում կանոնաւոր է։ Քաղ. Միութիւնը քաղաքում բացել է հիւանդանոց՝ ամեն յարմարութիւններով։ Դաշտի գիւղերում բժշկական մասը վարում է Հ. Կ. Կոմ. բժ. պ. Մանուշակեանը, որը շարունակ շրջում է գիւղերը, իսկ ծանր հիւանդներին փոխադրում է քաղաքի հիւանդանոցը։ Շնորհիւ Հ. Կ. Կոմիտէի տեղիս լիազօր պ. Կ. Սասունու և իր երկու ներկայացուցիչների՝ Մշոյ շրջանի գաղթականական գործերը տարւում են կանոնաւոր կերպով։ Գործիչները գլխաւորապէս աշխատել են սնունդի մասին։ Երեք ամսուայ ընթացքում նոյն Կոմիտէի պահեստից գաղթականներին տրուած է մօտաւորապէս տասը հազար պուդ ցորեն և գլգլ։

Այժմ շրջանում ցորենը վերջացել է և մինչև նոր հունձքը գաղթականութեան մի մասը հացի մեծ կարիք պէտք է ունենայ և սպառւում է սով։ Այդ պատճառաւ էլ գաղթականութեան համարեա կէսը պէտք է փոխադրել Կովկաս։ Լիազօր պ. Սասունին հեռագրով դիմել է Կոմիտէին, որ անմիջապէս ալիւրի պահեստներ հիմնեն Մուսունում, Ղարաքիլիսէում, Դութախում և Խնուսում։

Մօտկանի շրջանի գերութիւնից ազատուած հայերը պատմում են, որ այնտեղ հացի մեծ կարիք են զգում։ Փախստականների պատմելով Մօտկանի շրջանի հացը բոլորովին սպառուել է։ Սովամահի դէպքեր են պատահում թէ հայերից և թէ քրդերից։

—

Խնուսից Մուրադը հեռագրում է գաղթականական գործի գլխաւոր լիազօր գեն. Թամամշեին և Քաղաքների Միութեան

կովկասեան բաժանմունքի լիազօր Ալ. Խատիսեանին, որ այնտեղ գտնուող փախստականները սովից մեռնում են։ Սովամահութեան դէպքերը շատանում են։ Եկել էին 561 փախստական, նորից եկան 843. մեծ կարիք կայ ալիւրի և հագուստի։

---

## ԳԱՒԱՌ

—

ԱՇՏԱՐԱԿ, 24 յունիսի.—Այս տարի մի չարաբաստիկ, մի սև տարի է ինչպէս ամբողջ աշխարհի, այնպէս էլ Աշտարակի համար։

Գիւղացութիւնը երկու տարի շարունակ զրկուած լինելով խաղողի բերքից, ցաւ ու դարդի մէջ ապրելով հազիւ-հազ կարողացաւ քարշ տալ իւր գոյութիւնը մինչև այս տարի, յուսալով, որ այս տարուայ բերքը կազատուի բնութեան պատահարներից, որով և կը հոգայ իր կարիքները. սակայն իզուր անցան այդ յոյսերը։ Այս տարի մի անասելի առատ խաղողի բերք էր սպասւում։

Բայց աւա՜ղ, շուտով երևան եկան դաժան «մրո և չոռ» հիւանդութիւնները, որոնք կամաց-կամաց աւերում են մեր առատ բերքերը. մինչև խաղողաքաղ այգիներում ոչինչ չի մնալ. բացառութիւն են կազմում մի քանի այգիներ։ Ծծումբ կամ արջասպ (կուպարոս) չկայ այստեղ, որ գոնէ մի չնչին մասը կարողանայինք ազատել։ Այսպիսով մեր խեղճ գիւղացութիւնը այս երրորդ տարին է, որ զրկւում է խաղողի բերքից։

Ցորենի բերքը նոյնպէս վատ է։ Հունձը արդէն սկսուել է։

Աշխատաւոր ձեռքերի մեծ կարիք է զգացւում։ Հասարակ բանուորը օրեկան 3 ռ. է ստանում։

Տղամարդկանց գերը մեծ մասամբ կատարում են կանայք և երեխաները։ Անգութ խանութպաններն էլ իրենց արշաւանքն են սկսել։ Ապրանքները առասպելական գների են հասցրել։ Ի՞նչ կըլինէր խեղճ գիւղացու դրութիւնը, եթէ չլինէր տեղիս սպառողական խանութը։ Եթէ պատահում է, որ սպառ. խանութից սպառում է մի որևէ ապրանք, միւս խանութներում նոյն ապրանքը ուղիղ մէկուկէս թանգ են ծախում։

Գնունի

—

ԼՈՐԻ ԴՊՐՈՑԸ (Զանգեզուրի գաւառ)

Տաթևի վիճակի Լոր գիւղը ունի մօտ 70 տուն բնակիչ, որ պարապում է այգեպանութեամբ, երկրագործութեամբ և անասնապահութեամբ։

Գիւղը ունի կրթուած երիտասարդութիւն, որ ապրում է Բագւում, մի փոքր մասն էլ Գորիսում։ Համալսարանականներն ու միջնակարգ դպրոցն աւարտողները գերակշռող տոկոս են կազմում։ Մնացածները հանքերում են աշխատում, կամ էլ արհեստաւորներ են և ունեն իրենց սեփական արհեստանոցները։

Պարապմունքներից այգեպանութիւնը գլխաւոր տեղն է բռնում և շատ օգտաւէտ է միայն պտղաբեր տարիներում։ Այգիների ծառերի մեծ մասը խնձորենի է, որ այստեղ շատ լաւ է աճում, մանաւանդ մի քանի տեսակները։ Խնձորենուց բացի տարածուած է տանձենին, նաև դամբուլենին ու կեռասենին։ Այս երեք տարի է ինչ այգիները ոչինչ չեն տալիս և եթէ իւրաքանչիւր գիւղացու վրայ իր այգիների վնասը տարեկան միջին թուով 500 ռ. գցենք, 3 տարուանը կը լինի 1500 ռ., իսկ ամբողջ գիւղի վնասը 100,000-ից աւելի։

Եթէ աւելացնենք անօրինակ թանգութիւնն էլ, աշխատող ձեռքի պակասը, անցեալ տարուայ ցորենի չը լինելը—հասկանալի կը լինի գիւղացու ծանր կացութիւնը։ Եւ այժմ գիւղում տուն չը կայ, որ պարտք արած չը լինի այս նեղ օրերը մի կերպ կառավարուելու համար։

Արդ այսպիսի դրութեան մէջ մտածել դպրոցի մասին աչքի ընկնող մի պատուաբեր երևոյթ է, որ գալիս է ցոյց տալու թէ ինչպէս գիւղացին հասկացել է ուսման անհրաժեշտութիւնը, որ հացի հոգսի հետ աշխատում է որդուն անուսում չը թողնել։

Լորի դպրոցը հիմնուել է դպրոցների վերաբացման հենց առաջին տարին։ Հնութեան կողմից նա կարող է մրցել ուրիշ շատ դպրոցների հետ։

Վերաբացումից յետոյ եղել են մի շարք ուսուցիչներ, որոնց մէջ նաև Դաւնիկ Բեալաշեանը։ Կարօտով և անձկութեամբ են յիշում գիւղացիք այն վարժապետներին, որոնք լաւ անուն են վաստակել իրենց աշխատանքով։

Այս տարի ուսումը շատ ուշ՝ նոյեմբերի 5-ին սկսուեց, իսկ վերջացաւ մայիսի 28-ին։

Հիմնուելու օրից ի վեր դպրոցը ունեցել է երեք բաժանմունք։ Բայց այս տարի ի նկատի ունենալով, որ տարին ուշ սկսուեց, և որ Գ. բաժանմունքի աշակերտները թւով քիչ են, հոգաբարձութիւնը, տեսչի կարգադրութեամբ, Գ. բաժանմունքը միացրեց երկրորդի հետ։ Աշակերտների ընդհանուր թիւը՝ 33 էր, որից 29 տղայ, 4 աղջիկ. մինչդեռ անցեալ տարիներում աշակերտների թիւը 60-ից անցնում էր։

Աշակերտների մեծ մասը լորցի են—24 հոգի և 4 աղջիկ, իսկ Գետաթաղից 7 տղայ, Դարաբասից—1։ Դարաբասը Լորից հեռու է 2 վերստ, իսկ Գետաթաղը 1։ Աշակերտների երթևեկութիւնը, ձմեռուայ ցրտի և բուքի պատճառով, երբեմն ընդհատւում է։

Դպրոցը ունի սեփական շէնք, որ շինուել է 1910 թ. երիտասարդութեան և գիւղացիների ջանքով։ Դպրոցի շէնքը ունի 2 մեծ, լուսաւոր սենեակ։ Պարապմունքները լինում են մի սենեակում. միւսն ազատ է։

Տարուայ ընթացքում եղել է երկու աշակերտական հանդէս, երեք զուտ մանկական ցերեկոյթ, երեք զրօսանք, երկու ծնողական ժողով և հոգաբարձութեան վեց նիստ։ Մի քանի երիտասարդի մասնակցութեամբ եղել է երեք ներկայացում, որոնց մուտքը ձրի է եղել. միայն թէ կամաւոր կերպով հաւաքուել է մի գումար լրագրի համար։

Աշակերտներից փոխադրուել են 25 հոգի, մնացել են 8 տղայ զանազան պատճառներով։ Այս տարի թոյլ է եղել գրաւորը, տետրակի սղութեան պատճառով։ Մի տողանի տետր բնաւ չի եղել. տետրակները ծախուել են 10 կոպէկով։

Ողորմելի է դպրոցի բիւջէն. մուտք՝ Բագուի երիտասարդութիւնից—100 ռուբլի, թոշակագրամներից—156 ռ., եկեղեցուց—40 ռ., ուխտատեղուց—40 ռ., գրքերի վաճառումից—9. ռ., ընդամենը—345 ռ.։ Ելք—Ուսուցչի ռոճիկ—300 ռ., բնակ. վարձ—30 ռ., թեժական տուրք—10 ռ., գիւանական ծախք—20 ռ., ընդամենը 360 ռ. Նուազուրդ (դեֆիցիտ) 15 ռ.։

Այս տարի Վեհափառ Կաթողիկոսը բարեհաճել է դպրոցական ֆոնդի գումարներից տարեկան 200 ռ. նպաստ նշանակել։ Գիւղացիներն էլ—ծխական ժողովում որոշել են ծխական տուրք տալ ըստ չափի կարողութեան։ Հասարակութիւնը դիմում է ուղարկել Վեհափառ Հայրապետին՝ Որոտնայ աւերակ վանքի կրկնադարձ ուխտի օրուան եկամուտը յատկացնելու դպրոցին։ Հոգաբարձութիւնն էլ դիմել է Գորիսու և Բագուի երիտասարդութեանը և խնդրել է, որ իրենց ռոճիկների մի որոշ տոկոսը յատկացնեն դպրոցին։ Դիմել են տ. Շ. Տէր Մարգարեանին, որպէսզի վերջինս էլ մի որոշ նպաստ յատկացնի։ Տ. Շ. Տէր Մարգարեանը իր ծընողների յիշատակը յաւերժացնելու համար տարիներ առաջ իր հայրենի դպրոցին 300 ռ. է խոստացել, բայց մի թիւրիմացութեան շնորհիւ մերժել է իր նպաստը։ Հոգաբարձութիւնը խնդրել է, որ յարգելի տիկինը ուշադրութեան չառնի նման թիւրիմացութիւնները և շարունակի իր նպաստը։ Մի դիմում էլ ուղարկուած է Գորիսաբնակ եղբ. Փանեաններին։

Սպասելիք այդ գումարներով պիտի շէնքի պակասները լրացնեն և հնարաւորութիւն եղած դէպքում դպրոցը երկդասեան դարձնեն։

կրթենք գեղջուկի որդուն հայ ոգով, որ յաւիտեան վառ մնայ հայի օջախը, հուրը՝ անշէջ։

25 մայիսի Բակունց Աղ.

--

ՀԻՆ-ՆԱԽԻՋԵՒԱՆ, 14 յունիսի.—Վաղածանօթ լինելով մեզ Հին-Նախիջեւանն իր պատմական անցեալով, երեւակայում էինք տեսնելու իւր խորհրդաւոր անուան համապատասխան փառաշուք հնութիւններով լեցուն մի յուշարձան-թանգարան՝ հայրենի անցեալ փառքի նուիրական բեկորներու և քաղցր յիշատակներու։

Սակայն առաջին հայեացքէն իսկ՝ աւելի շատ ասիական յետ ընկած քաղաքի տպաւորութիւն է թողնում։

Բայց երբ սկսում էք ի մօտոյ հետաքրքրուել, արդարև ձեր աջև բացւում է Նոր քաղաքի հարաւային կողմում ընդարձակ դարևանդը հին քաղաքատեղու շերտ-շերտ, աղիւսաշէն որմերի փլատակներով, որ տարածւում են ամբողջ բարձրաւանդակի երկայնութեամբ՝ մինչև Նոյեան տապան կոչուած հայկական հին գերեզմանոցի հարաւային ծայրը. ընդարձակ հողակոյտի վարէն մինչև ի վեր նկատւում են աւերակներու յաջորդաբար շինուած հետքեր։

Նոյեան տապանի արևմտեան եզերքում մի գեղեցիկ բլրակի վրայ վաղուց ի վեր շինուած կայ արաբական բոլորաձև, ցածլիկ մի դամբարան Նոյեան տապան անունով, որի միջով մարդ հազիւ կրնայ անց ու դարձ ընել։

Այս պատմական գերեզմանոցի արևմտեան ուղղութեամբ՝ փլատակուած դարևանդի խորքերում՝ բացուած են մի շարք աղիւսաշէն, կամարակապ շիրիմներ մեռելներու աճիւններով, նախապատմական ժամանակներէ մնացած։

Պատմում են որ այս ձմեռ գեներալ Հիւսէին խան Նախիջեանսկին՝ երբ Թիֆլիսէն պիտի այցելութեան գար իր ծննդավայրն Նախիջևան, բարձրաստիճան, բարեպաշտ տիկնայք անոր փոքրիկ, գեղեցիկ քարեր յանձներ են բերելու Նոյեան տապանի որմերուն վրայ կպցնելու, որպէս փորձ իրենց ուխտի կատարման կամ ոչ։

Խանն իր հետևորդ շքախմբի ուղեկցութեամբ գնալով Նոյեան տապան՝ իր յանձնարարականը կատարելու, վերադառնում է ուրախութեամբ, որ ուխտի քարերն կպած են եղեր որմերուն։

Նախիջևանի հնութիւններու առաջին տեղը բռնում է արաբական բազմանկիւնի մինարէն, որ իր դրուակաւոր, գեղաշէն կերտուածքներով կարող է համարուել հին ճարտարապետութեան հրաշալիքներէն մին, որ կանգուն է եօթն հարիւր տարիներէ ի վեր։

Վերջին դարու գործ են քաղաքի թէ եկեղեցիները, թէ մզկիթները։ Շինութիւններու մէջ ամենէն աւելի աչքի են զարնում Հայոց եկեղեցիներն իրենց հոյակապ կերտուածքներով։ Երեք Խոբան կոչուած եկեղեցու զարդ և փառք եւրոպական՝ աննման պատկերն՝ Փրկչի Ծննդեան՝ Սուրբ ընտանիք կոչուածն «Sainte Samiell», որ արդէն յայտնի է իր գեղարուեստական ինքնուրոյնութեամբ և հմայիչ տեսքով ու ձևով։ Այս նկարը բոլոր այցելուներուն հիացումն և զարմանք պատճառեց։ Այս հրաշալիքը վերջերս երևան հանուած է վիճակի առաջնորդ Սիօն վարդապետի ջանքերով, որն որպէս հասարակ նկար մի անկիւն ձգուած եղեր է միշտ, մինչդեռ այժմ մեծ զգուշութեամբ և խնամքով է պահւում յատկապէս իրեն յատկացրած խորանի մը մէջ՝ նորաշէն, փառաւոր խաչկալով։ |

Թանգարժէք, հաղուագիւտ նկարը շատ հմուտ վրձնի գործ է, Եւրոպայէն բերուած ունիթոններու ձեռքով, որու հայեացքէն մարդ յափշտակւում է և դժուարութեամբ զատւում։ Եւրոպացի հնագէտները գնահատում են մինչև հարիւր հազար ֆրանկ և ենթադրում են, որ մօտ հինգ հարիւր տարուայ գեղարուեստական սքանչելիք է։

Նախիջևանը յայտնի է և իւր շրջապատի վանքերով, որոնց մէջ առաջին տեղը բռնում են Երնջակի և Նախավկայի հնադարեան վանքերը, որոնք ուրախառիթ տպաւորութիւն են թողնում այցելուներու վրայ՝ իրենց գեղեցկադիր սրբավայրերով և կատարուած նորոգութիւններով։

Երնջակը պահում և միդասեան երկու սեռի դպրոց։

Այս երկու վանքերը բարեբաղդաբար երեք տարուց ի վեր յանձնուած են վիճակի առաջնորդ Սիօն վարդապետի հսկողութեան։ Եւ այս ամենը ի մասնաւորի պարտական ենք հայր առաջնորդի ջանքերուն և հոգածութեան։

Բայց՝ որ ամենէն հետաքրքրականն է և զարմանալի՝ այսօր այդ միշտ մուրացիկ աղքատութեան դատապարտուած վանքերն ի շնորհս հայր Սիօնի խնամատարութեան՝ ունին քանի մի հազար ռուբլի գումար տնտեսուած, իրենց ապագայ վերաշինութեան և պայծառութեան, որ պարբերաբար առաքուած են իւր կողմէն և իւր ձեռքով հոգևոր բարձր իշխանութեան պահպանութեան։

Վ. Վարժապետեան

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

Կ. Հ. Բ. Ը. Խորհ. յուլիսի 2-ի որոշումները.—Համաձայն առաջարկութեան Խորհրդի պ. Տ. Աֆրիկեանը նամակով յայտնում է թէ ներկայ տարուայ սեպտեմբերի 1-ից սկսած մինչև պատերազմի վախճանը դպրոցների օգտին իւր նշանակած տարեկան 6000 ռ. նպաստի վրայ աւելացնում է 25%—այն է 1500 ռ.։ Բացի այդ սոյն դպրոցական տարուց յատկացնում է Օշականի ս. Մեսրոպեան դպրոցին նպաստ իւրաքանչիւր տարին, 500 ռ., որոնց աւելացնելով Զխարի դպրոցին տարեկան 300 ռ., ընդամենը 8300 ռ. տարեկան նպաստ։ Խորհուրդը ի նկատի առնելով այս ջերմ վերաբերմունքը դէպի կրթական գործը գրաւոր նորից յայտնեց իւր շնորհակալութիւնը։

***

— Որոշեց յայտնել շնորհակալութիւն Ղազանի վիճակի Վերին Խոտանուն գիւղի դպրոցի Հոգաբարձութեանը, ի նկատի ունենալով նորա սրտացաւ վերաբերմունքը իւր խնամքին յանձնուած դպրոցին։

***

Գանձակի փոխանորդի ժողոված տաճկահայ փախստականների օգտին № 9 հանգանակութեան գրքոյքով, յօդ. 1—75, 24 դեկտ. 1914—17 մարտի 1916

Մուտք. 1) Թիֆլիսի Հայոց Կենտր. Կոմիտէից 1000 ռ., 2) Զանազան աղբիւրներից նուէրներ 1616 ռ. 34 կ., ընդամենը 2616 ռ. 34 կ.։

Ելք, 1) Գանձակի հայոց յանձնաժողովի որբանոցին 1000 ռ. և զանազան ծախսեր 1616 ռ. 34 կ., ընդամենը 2616 ռ. 34 կ.։

***

Գրադարան-Ընթերցարան.—Յունիս ամսուան ընթացքում Կ. Հ. Բ. Ը-թեան կենտրոնական ընթերցարանն են յաճախել 2,100 կին և 1,800 այր, ընդամենը 3,900 հոգի։ Գրադարանից տրուած է տանը կարդալու համար՝ հայերէն 1,503 գիրք և ռուսերէն 633, ընդամենը 2,136 գիրք։

Գրքերի ստուգութեան պատճառով գրադարան-ընթերցարանը 13 օր փակ էր, այնպէս որ այդ թուերը վերաբերում են միայն 17 օրուան։

***

—Ի նկատի ունենալով մի քանի ուսուցիչների խնդիրները, որոնք դիմելով Խորհրդին ուսուցչական հիմնադրամից (ֆոնդից) նպաստներ էին խնդրած, Խորհուրդը որոշեց տալ Գ. Դերզեանին միանուագ 60 ռ., բ) Ցարսկի Կոլոդցի դպրոցի ուսուցիչ Յակոբ քահ. Գրիգորեանին միանուագ 50 և հիւանդանոցի ծախսերը, գ) Փիրնաուտ գիւղի դպր. ուս. ՍարգիսՂազարեանին 50 ռ., դ) Դուշէթի հանգ. վարժուհի Խ. Ղազարեանի մօրը՝ Եկատերինէ Ղազարեանին թաղման համար արած ծախքի համար 25 ռ.,, որ Նախկին տուածով լինում է 50 ռ.։

Կ. Հ. Բ. Ը-թեան Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է— Պ. Աղէքսանդր Մելիք-Ազարեանից 1915/16 դպրոնական տարուայ դպրոցական նպաստ 900 ռ.։

*
* *

Եսայի, Ալէքսան, Եղիա և Միքայէլ Ջանփոլադեաններից ի յիշատակ իրենց հօր՝ Բաբա Մանուկեան Ջանփոլադեանի յօգուտ փախստականների 200 ռ.։

*
* *

Պ. Ղ. Այգինեանի միջոցաւ պ. Համբարձում Եսայեանից յօգուտ հայ որբերի 300 ռ.։

*
* *

Թիֆլիսի I մասնաւոր լոմբարդի ծառայողներից յօգուտ հիւանդանոցի 7 ռ. 97 կ.։

*
* *

Հայկ. Կենտ. Կոմիտէ

Կովկասեան գործող բանակի հրամանատարը, գաղթականական գործով զբաղուող—լիազօր Թամամշեանի միջոցաւ յայտնում է Հ. Կենտր. Կոմիտէին, որ այսուհետև թոյլատրում է գաղթականներին վերադառնալ ու բնակութիւն հաստատել Արճէշի շրջանում, որտեղ է նաև Մանազկերտը։ Այդ շրջանը վերադառնալ կարող են միայն բնիկները։

*
* *

Պետրոգրադի պատերազմից փախած հայերին օգնող Ընկերութեան Կոմիտէի Վարչութիւնը խնդրում է Հայ. Կենտր. Կոմիտէին՝ Ամերիկա գնացողներին ծանուցանել հետևեալ պայմանները. 1. Ամերիկա գնալ այժմ կարելի է միայն Վլադիվոստոկով և Շվեդիայով. 2. Ամերիկա գնացողները պէտք է իրանց անցագրերը Անդրկովկասում վաւերացնել տան. 3. Պետրոգրադի պատերազմից փախած հայերին օգնող ընկերութիւնը, որպէս զի խրախուսած չլինի հայրենիքից Ամերիկա վերադարձը, որոշել է Պետրոգրադից անցողներին չտալ ոչ մի դրամական օժանդակութիւն. 5. Ամերիկա գնացողները Անդրկովկասից դուրս գալու ժամանակ պէտք է ունենան 300 ռուբլուց ոչ պակաս դրամ, որպէս զի կարողանան հասնել Ամերիկա առանց արգելքի։

*
* *

Հ. Կ. Կոմիտէն ուղարկեց Տրապիզոն պ. Ս. Տէր-Յակոբեանին, իբրև անդամ Տրապիզոնում փախստականների համար կազմած յանձնաժողովի օգնական հայր Տէր-Մեսրոպ Մելեանի։

*
* *

Շնորհակալութեամբ ստացուել է Սամարկանդի հայ կանանց թէյարանից յօգուտ գաղթական որբերի 150 ռ.։

---

## ՎԵՐՋԻՆ ՀԵՌԱԳՐԵՐ

### ՀԱՅԿ. ԿԵՏՐ. ԿՈՄԻՏԷԻՆ

X—Գրիգորեանից

Ցորեն չունենալու պատճառով գաղթականները սաստիկ նեղւում են։ Բիթլիսից Մուրադը հեռագրում է, որ գաղթականները և որբուկ երեխաները վերադառնում են բոլորովին մերկ. հարկաւոր է շուտափոյթ օգնութիւն։

—

X—Ղամարեանից

Մուշի գաղթականները հարիւրներով գալիս են, հարկաւոր է նրանց ճանապարհի համար հազար պուդ ալիւր և հինգ հազար ռուբլի սննդատու կայարանների համար մինչև Ալաշկերտ։

Ալիւրը խնդրում ենք շուտով ուղարկէք Սարիղամիշի վրայով Խնուս կամ Քեփրիքէօյ. փոխադրութիւնը Ղամբարեանի հասցէով կատարեցէք։

—

Ղարաքիլիսա (Ալաշկերտ)—Ֆարաջանեանից

Մուշից և Խնուսից հասել են տեղս առայժմ 450 գաղթական։ Սպասւում են նորերը։ Մթերքները ձեռք ենք բերում շատ թանգ գներով։

—

Պետրոգրադ—Մ. Պապաջանեանից

Գեներալ Թամամշեանին յայտնուած է՝ պարենաւորման նախահաշուի մէջ մտցնելու նաև Բիթլիսի, Մշոյ և Խնուսի շրջանի պատերազմից փախածներին.

—

Պետրոգրադ—Մ. Պապաջանեանից

Գեներալ Թամամշեանին յայտնուած է, որ Պետական գանձարանից բաց է թողնուած յատկացնելու գաղթականական դպրոցների և որբանոցների համար 215,000 ռ. միանգամից և 210,000 ռ. դարձեալ նոյն նպատակի համար։

—

Նոր-Բայազէդ—Կ. Հ. Բ. Ընկ. ճիւղի Վարչութիւնից

Փոխադրեցէք 3,000 ռուբլի 200 որբի համար։ Որբանոցի հաշիւները յանձնել ենք պոստին. Նորից 100 որբի համար տեղ ենք պատրաստել։

—

Հ. Կենտ. Կոմիտէն—Ալաշկերտ Ֆարաջանեանից

Տեղափոխել տեղից որբանոցի կազմից աւելի հաւաքուած 200 որբերին Նոր-Բայազէդում բացուած նոր որբանոցները։

—

Նոր Բայազէդ—Կ. Հ. Բ. Ը-թեան ճիւղի Վարչութիւնից

Տեղաւորեցինք մեր որբանոցներում Հին Նախիջևանի որբանոցի 48 որբերը, որոնք տեղափոխուած են մեր որբանոցները Վ. Մինասեանի ուղղեկցութեամբ։

---

## ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԳՈՐԾԸ

Կ. Հ. Բ. Ընկերութիւնը, ինչպէս արդէն յայտնի է լրագրութիւնից, գաղթականների պարենաւորման գործը կազմակերպելու համար ստացել է կառավարութիւնից փոխարինաբար 900,000 ռ.։

Այդ ուղղութեամբ անցնելով գործի կազմակերպման, Կ. Հ. Բ. Ընկ. ապրիլի վերջերից սկսեց իր գործունէութիւնը։ Արդ՝ մինչև այժմ բացել է Կովկասի քաղաքներում և գիւղերում, ինչպէս օրինակ՝ Երևանում, Վաղարշապատում, Իգդիրում, Ալէքսանդրապոլում, Մեծ-Ղարաքիլիսայում, Ներքին-Ախտայում, Ելենովկայում, Նոր-Բայազէդում, Գանձակում, Քարվանսարայում, Դիլիջանում, Աղստաֆայում, Սարիղամիշում, Բաշքէօյում և Վանում պահեստներ գաղթականներին կենսական մթերքներ հայթայթելու համար։

Բացի այդ վերջերս Կ. Հ. Բ. Ընկերութիւնը ստանալով Խոյի, Մուշի, Ալաշկերտի և այլն շրջաններից լուրեր տեղումը գտնուած գաղթականութեան մեծ կարիքների մասին՝ ուղարկեց իր լիազօրը ծանօթանալու տեղական կարիքներին և ըստ հնարաւորութեան շուտափոյթ կազմակերպել այդ վայրերում ևս գաղթականների պարենաւորման գործը բաց անելով պահեստներ և սպառողական խանութներ։

Այդ նպատակով ցարդ զանազան ֆիրմաներից Կ. Հ. Բ. Ը-թիւնը մինչև յուլիսի մէկը գնել է 348 վագոն ալիւր—վագոնը 1000 պուդ,—ուրեմն 348 հազար պուդ, որից մինչև օրս ստա-

ցուել է 88 վագոն և ուղարկուել է հետեւեալ վայրերը՝—Ալէքսանդրապոլ՝ 5 վագոն, Գանձակ՝ 5, Իգդիր՝ 20, Վաղարշապատ՝ 10, Մեծ-Ղարաքիլիսա՝ 10, Ջուղա՝ 5, Նախիջևան՝ 4, Երևան՝ 19, Սարիղամիշ՝ 4, Քարվանսարա՝ 1, Դիլիջան՝ 1, Ելենովկա՝ և Նոր-Բայազիդ՝ 3 վագոն։

Շաքար գնուած է 24 վագոն, որից մինչև յուլիսի մէկը ստացուած է (25, 29 յունիսի) 11 վագոն և ուղարկուած հետեւեալ վայրերը՝ Վաղարշապատ 1 վագոն, Սարիղամիշ 1, Երևան 1, Ալէքսանդրապոլ՝ 1, որտեղից 400 պուդ պիտի ուղարկուի Մեծ Ղարաքիլիսա, Իգդիր՝ 1, Աղստաֆա՝ 1 վագոն 971 պ. 34 ֆ., որտեղից ըստ կարգադրութեան ուղարկուած է 300 պ. Գանձակ, 100 պ. Քարվանսարա, 100 պ. Դիլիջան և 481 պ. 34 ֆ. Ելենովկա։

## Ամենայն Հայոց Կաթող. Թիֆլիսում

Ինչպէս լսում ենք, Ամենայն Հայոց Կաթողիկոսը հետեւեալ հարցերն է յարուցել բարձր մարմնաւոր իշխանութեան առաջ. ա) ազատ վերադարձ փախստականների իրենց վայրերը՝ Վան, Ալաշկերտ, Բայազէտ և այլ ապահով և անվտանգ վայրեր. բ) միջոցներ տալ փախստականներին սերմացու, գործիքներ և լծկաններ տալու՝ վերականգնելու իրենց տնտեսութիւնը, գ) տալ սահմանած նպաստը մինչև վերաշինութիւնը, դ) միջոցներ ձեռք առնել փնտռելու նուաճուած երկրներում որբ հայ երեխաներին և զ) բոլոր եկեղեցիներում վերսկսել ժամասացութիւնը և վերականգնել առաջնորդութիւնները։

* * *

Պետրոգրադի համագումարի ընտրած լիազօրները պէտք է ժողովուէին այս ամսի 2-ին իրագործելու համագումարի որոշումը. Պետրոգրադի լիազօր Ա. Սարիբէգեանը և Մոսկուայինը՝ Ս. Մամիկոնեանը չէին եկել և ժամանակին չէին ուղարկել համագումարի արձանագրութիւնը։ Մնացեալ լիազօրները Կովկասի և Նոր-Նախիջևանի պ. Գ. Չալխուշեանը կազմեցին ժողով, որին հրաւիրեցին այժմ Թիֆլիս ուրիշ գործով եկած Պետրոգրադի ուսուցչապետ Վ. Ի. Վարդանեանին և որոշեցին պ. Չալխուշեանի մօտ գտնուած համագումարում կազմած հայ կազմակերպութիւնների միութեան կանոնագրութիւնը ներկայացնել Ներքին Գործոց նախարարութեան հաստատութեան։

Այդ կանոնագրութեան հիման վրայ հայ կազմակերպութիւնները գաղթականական գործերի համար տարէնը երկու անգամ պէտք է ժողովուեն էջմիածին, իսկ մշտապէս գործերը վարելու համար Թիֆլիսում լինելու է մէկ գործադիր մարմին՝ կազմուած 7 հոգուց։

* * *

Անցեալ շաբաթ Ամենայն Հայոց Վեհ. Կաթողիկոսին ներկայացաւ Ուսուցչական Միութիւնը, որի նախագահ պ. Ս. Աւետեանը Նորին Վեհափառութեանը հայ ուսուցիչների կողմից մատոյց խնդիր, որի բովանդակութիւնն է. կազմել մի յատուկ յանձնաժողով, 1) Ուսուցիչների նիւթական վիճակը բարւոքելու և դասագինը բարձրացնելու. 2) Աշխատաւոր ուսուցիչներին թոշակարկղ սահմանելու և 3) Նոր հրատարակուած Ներքին կանոնագրութիւնը կէտ առ կէտ գործադրել տալու։

Վեհափառ Հայրապետը սիրով լսեց ուսուցիչներին և կարգադրեց կազմել խնդրուած յատուկ յանձնաժողովը, յարելով, որ իւր սրտին շատ մօտ են այդ խնդիրները և թող այդ լոկ խօսք չը կարծուի։

* * *

Վեհ. Կաթողիկոսին այս շաբաթ ներկայացան զանազան անձեր, ընկերութիւնների և հաստատութիւնների ներկայացուցիչներ և այլն։

## Քրոնիկոն

Թիֆլիսի ոստիկանապետի նախաձեռնութեամբ շուտով կը բացուի «Քաղ. ոստիկանութեան ծառայողների տնտեսական խանութը», որի կանոնագրութիւնը Փոխարքան արդէն հաստատել է։ Խանութին կից կբացուեն նոյնպէս արհեստանոցներ և փռներ։

* * *

Էջմիածնի ճեմարանում արդէն սկսել են վերանորոգութիւնները և սեպտեմբերին պիտի սկսեն ուսումը։ Ուսուցչական խումբը արդէն հրաւիրուած է, որ մինչև օգոստոսի 20-ը լինեն Վաղարշապատում։

* * *

Յուլիսի 1-ին առաջնորդարանում կայացած փախստական որբերին օգնող հայ կազմակերպութիւնների ներկայացուցիչների խորհրդակցութիւնն ընտրեց մի կենտրոնական մարմին՝ Ամենայն Հայոց Կաթողիկոսի հովանաւորութեամբ և Մեսրոպ եպիսկոպոսի նախագահութեամբ։

* * *

Կուկիա թաղամասի մի խումբ բնակիչներ խնդրամատոյց են եղել Նահանգապետին, որ իրենց թոյլատրուի Թիֆլիսում հիմնելու սպառողական ընկերութիւն «Կուկիայի կօօպերատիւ» անունով։

* * *

Կանանց բարձրագոյն դասընթացքներին կից բացուելիք բժշկական բաժանմունքի կահաւորման համար Բագուի Նաւթարդիւնաբերողների խորհուրդը խոստացել է 100,000 ռ., իսկ Դ. Աւանխան Իզքաշեանը տուել է 10,000 ռ.։ Դասախօսութիւնները պէտք է տեղի ունենան դասընթացքների այժմեան շէնքում, իսկ փորձնական դասերը լինելու են Արամեանի հիւանդանոցին կից. ինժեներ Զուրաբեանին արդէն յանձնարարուած է համապատասխան լսարան պատրաստել։ Ունկնդրել ցանկացողները այժմեանից պէտք է խնդիր ներկայացնեն դասընթացքների տեսչի անունով։

* * *

Թղթի թանգութեան և տպարանական ծախսերի սղութեան պատճառով Թիֆլիսի ռուս թերթերը հատավաճառի գինը աւելացրել են 1 կոպէկով, այն է՝ 6 կոպէկի փոխարէն 7 կոպէկ։

* * *

Թիֆլիսեցի Ս. Թումանեանը թոյլտուութիւն է խնդրել վրացերէն լեզուով մի շաբաթաթերթ հրատարակելու «Սոմէխտա Ցխովրէբա» (Հայկական կեանք) անունով։

* * *

Ալէքսանդրեան ուսուցչական ինստիտուտին կից բացուած են երկշաբաթեայ դասընթացքներ բարձրագոյն տարրական դպրոցների 40 ուսուցիչների համար՝ գրական-պատմական և բնագիտական-մաթեմատիկական բաժանմունքներով։

### † ՄԻՔԱՅԷԼ ՍԱԼԱՄԲԷԳԵԱՆ

Ամսիս 3-ին Միքայէլեան հիւանդանոցում 81 տարեկան հասակում մեռաւ Թիֆլիսին լաւ յայտնի ճարտարապետ-ուսուցիչ Միքայէլ Սալամբէգեանը։ Թիֆլիսում նա եղել է դասատու, հասարակական գործիչ և Գայիանեան դպրոցի գլխաւոր հիմնադիրներից մէկն ու խնամակալը։ Սալամբէգեանը ունի շատ աշակերտներ և յարգուած էր որպէս ազգասէր ու մարդասէր անձ։

* * *

Երկու օր (յուլիս 6 - 7-ին) Թիֆլիսի էլէքտրաքարշը չը բանեց՝ նահանգապետի կարգադրութեան համաձայն. 8-ից վերսկսուեց։

* * *

Յուլիսի 6-ին Թիֆլիսի քաղաքային վարչութեան մէջ, նախագահութեամբ նահանգապետի, տեղի ունեցաւ խորհրդակցու-

*թիւն կենսամթերքի սակագնի մասին։ Յիրաւի կենսամթերքի գների կամայականութիւնը այն աստիճանի է հասել քաղաքում, որ, օրինակ շիշը 11 կոպ. գնած (մեծ քանակութեամբ և տեղում) Նարզանի զովացուցիչ ըմպելին՝ խանութներում ծախում են 40 կոպէկով և այն էլ յաճախ ոչ սառը։ Նոր որոշուած սակագները շուտով գործադրութեան կը դրուեն։*

***

*Կանանց բժշկական բարձրագոյն դասընթացքն Թիֆլիսում, ինչպէս հեռագրում են «Ռուս. Վէդ.» թերթին, կը բացուեն սեպտ. 1-ից։ Այս տարի բացուելու է առաջին դասընթացքը։ Խնդրամատոյց են լինում ընդունելու նաև տղամարդկանց։ Կին-ուսանողուհիների թիւը աճագին է և հետզհետէ շատանում է։*

***

***

*Նոր սակագինը Թիֆլիսում.—Ամսիս 8-ին Թիֆլիսում հրատարակուեց կենսամթերքի նոր սակագին, որից քաղում ենք հետևեալները.—*

*Ընդեղէններից՝ գետնախնձոր՝ փ. 5 կ.,—կաղամբ—5 կ., սոխ—5., կանաչ լոբի—7 կ., կարմիր—8 կ., վարունգ—տասը հատը 10—15 կոպ.։ Պտուղներից.- ձմերուկ—փ. 3 կ., սեխ.—փ. 4 կ., խաղող Երևանի՝ փ.—20 կ., Գանձակի—15 կ., լիմոն—հատը 20 կ., պանիր թուշի—փ. 45 կ.։ Սապոն—փ. 36 կ., շաքար—23—34 կ.։ Իւղի, հացի, բրնձի, մսի և այլն գները թողուած են նախկինը։ Սակագին կայ նաև ճոթեղէնների համար։*

# Արտաքին տեսութիւն

## ԹԻՒՐՔ ԱՇԽԱՐՀԸ՝ „ԵՐԻՏԱՍԱՐԴ ԹԻՒՐՔԵՐԻ" ԴԷՄ

*Արաբների ապստամբութիւնը, որ այնքան յանկարծակի պայթեց—շանթահար մի հարուած է «երիտասարդ թիւրքերի» համար։ Միաժամանակ այդ ապստամբութիւնը ազդարարում է Օսմանեան պետութեան կատարեալ քայքայումը, որ բնական հետևանքն է այն անարդար ու ոճրային վարմունքների, որ կառավարութեան գլուխն անցած աւազակային խումբը գործադրել է հպատակ ազգերի վերաբերութեամբ, այն է՝ խմբային կոտորածներ, մահապատիժներ և քաղաքական հակառակորդների սպանութիւններ։*

*Հայերից, ալբանացիներից և յոյներից յետոյ՝ արաբներն են, որոնք ենթարկուեցին իթթիհաթականների վայրենութեանց, և այն՝ նշանաւոր Ջէմալ փաշայի հրամանով. մի փաշա, որին ուզում էին ցոյց տալ իբր ֆրանսասէր։ Ջէմալ փաշան իր գործը սկսեց՝ կախել տալով Դամասկոսի պատգամաւոր Շէֆիկ բէյ էլ Մօէյադին, յետոյ կախաղան հանեց Աբդիւլ-Համիդ էֆէնդի Զէհրավիին, որ Պարիզում նախագահ էր արաբների համագումարին։ Կախուած է նաև Աբդ-էլ-Կադէրի մի որդին, որ համակրում էր Ֆրանսիային։*

*Եւ եթէ քիւրդերը դեռ չեն ապստամբել, պատճառն այն է, որ նրանք շատ լաւ զինուած լինելով և լեռնաբնակ, հեռու են մնացել երիտասարդ թիւրքերի ոճրագործ ձեռքերից։*

*Հայերն արդէն բազմաթիւ անգամներ տուժել են և իրենց արիւնը առատութեամբ թափել՝ կրած տանջանքների դէմ իրենց գայրոյթը արտայայտելով։ Օսմանեան պետութեան բոլոր ցեղերը, առանց բացառութեան՝ կեղեքուել են այդ արիւնարբու և գիշակեր աւազակների ձեռքով։ Այսօր արաբներին է հասել կարգը։ Արդէն այլևս համբերութիւնից հատած՝ ամբողջ խալիֆն է, որ ոտքի է ելնում Օսմանեան պետութեան գլուխը անցած այդ անաստուած և անզգամ աւազակների դէմ, որոնց պաշտպան են հանդիսացել ոչ-իսլամ պետութիւնները, նոյնքան անզգամ, ինչպէս իրենց Կ. Պոլսի մեղսակիցները։*

*Արդ, ըստ աւանդութեան խալիֆի պետութիւնը անհրաժեշտօրէն և իրապէս պէտք է անկախ լինի որևէ օտար իշխանութիւնից։ Եւ եթէ Արաբիան իր անկախութիւնն է հռչակում այժմ—դրա պատճառներից մէկը պիտի համարել այն սարկական լուծը, որին ենթարկուել են այժմ իսլամ պետութիւնները՝ մնալով օտարների ազդեցութեան ներքոյ։*

*Իր աշխարհագրական դիրքովը անկախ՝ Արաբիան կարող պիտի լինի նուիրական մի սրբավայր դառնալ Հնդկաստանի, Եգիպտոսի, Սիրիոյ և Միջագետքի և Հիւսիսային Աֆրիկայի համար, ուր տեղի մահմեդականները այլևս դիւրութիւն պիտի ունենան ուխտի գնալ դէպի սրբազան քաղաքները—Մէքքա և Մեդինէ, առանց այլևս ենթարկուելու երիտասարդ թիւրքերի իշխանութեանց հարստահարութիւններին։*

*Արաբական այս ապստամբութեան ծաւալուելու շնորհիւ՝ օսմանեան պետութեան բոլոր ասիական տիրապետութիւնները, մինչև Բաբէլ-Մանդէբի նեղուցը՝ զատուելու են բոլորովին։ Եւ երիտասարդ թիւրքերի բանակները, այլևս զրկուելով ծովային հաղորդակցութիւններից, ապստամբուող արաբ ցեղերի դէմ կռուելիս՝ հանդիպելու են մեծ դժուարութիւնների։ Արաբների դէմ ստիպողաբար ուղարկուող ոյժերով կը ջլատուեն Սիրիոյ մէջ տեղի ունեցած գործողութիւնները։ Այդպիսի վիճակում՝ դաշնակիցների ոյժերը սպառնական կարող են դառնալ Արաբիոյ հիւսիսում և ռուսական ճնշումները աւելի ու աւելի յաջողութիւններ կունենան Կովկասի կողմից։*

*Այս դժուարութիւններին պէտք է աւելացնել և այն, որ արաբական ապստամբութիւնը կանդրադառնայ առ հասարակ իսլամ աշխարհի վրայ և մանաւանդ հիւսիսային Աֆրիկայի, որ ամբողջովին բնակուած է արաբներով։ Հաւանական է նոյն իսկ, որ Սիրիացի արաբները, քաջալերուած իրենց կրօնակիցների յաջողութիւններից, իրենց խտացած դժգոհութիւնը կարտայայտեն Ջէմալ փաշայի ոճիրների դէմ, որ գնալով սաստկանում է։ Այդ աւելի մօտ է իրականութեան այն պատճառաւ, որ թիւրք զօրագունդերը հետզհետէ արդէն սկսել են հեռանալ այդ կողմերից։*

*Արաբիոյ շարժումները անշուշտ իրենց անդրադարձումը կունենան նաև Կ. Պոլսում, ուր հիմքերից կը խախտուի այժմեան այն կառավարութեան դիրքը, որ բաղկացած է այսպիսի մի եռապետութիւնից.—Թալաաթը որպէս բացարձակ տէր, Էնուեր փաշան՝ նրա գործիքը և իշխան Սայիդ Հալիմ փաշան ցուցադրական մեծ վէզիրը։*

*Չէ՞ հնչում արդեօք հատուցման, պատժի ժամը։*

*Զօրավար Շէրիֆ փաշա*

*(«Մաթէն» 24 յունիս)*

—

*Ֆրանսական նոյն թերթը («Մաթէն») հաղորդում է, որ Մէքքայի շէրիֆը արդէն տիրել է Մէդինէին։ Ապստամբ ցեղերը ոչնչացրել են Հիջազի երկաթուղին և կտրել թիւրք զօրքի ճանապարհը։*

## ԼՈՒՐԵՐ

*Ինչպէս հաղորդում են թերթերը, Կ. Պոլսում տեղի են ունեցել բազմաթիւ ձերբակալութիւններ՝ թիւրք դժգոհ հոգևորականութիւնից։ Տրապիզոնի անկումից յետոյ՝ Երիտասարդ թիւրքերի դէմ գրգռումը սաստկանում է։ Գերմանացիները սակայն լրտեսների թիւն են շատացնում և ձերբակալութիւնների դիմում՝ դժգոհութիւնները խեղդելու համար։ Հաղորդում են միւս կողմից, որ թիւրքաց պարլամենտի նախկին նախագահ Ահմէդ Ռիզա բէյը բանակցութիւններ է սկսել թիւրք քաղաքական գործիչների հետ*

միացնելու քաղաքական կուսակցութիւններին՝ պետութեան անկման առաջն առնելու համար։ Կարծում են, որ Աճմէդ Ռիզան շուտով առանձին հաշտութիւն առաջարկելու համար հող է պատրաստում։ Շատ մեծ ցնցում է պատճառել Թիւրքիայում Բաբերդի (Բայբուրդի) գրաւումը։ Այդ գրաւումով Թիւրքիայի զէնքի յաջողութեան մասին երազանքը բոլորովին ցնդում է այլեւս։

—

«Ռուս. Սլովօ» թերթին հեռագրում են, որ Գերմանիայում երեւան են եկել կոչեր, որոնք հրաւիրում են ժողովրդին գործնական քայլեր անել պատերազմի դէմ։ Կոչերը սոց. ռամկավար կուսակցութեան կողմից լինելով՝ ձերբակալուած են Ռոզա Լիւքսէնբուրգը և այլ սոց. ռամկավարական ղեկավարներ։

—

Ըստ լուրերի Աւստրիայի կայսր Ֆրանց-Յօզէֆի առողջութիւնը վատացել է։

—

Չինաստանից չինական կուլիներ (բանուորներ) են սկսել հասնել Ռուսաստան և Ֆրանսիա։ Այս տարի կուղարկուեն մօտ մէկ միլիոն անձ։

—

Յունաստանում տեղի են ունեցել անտառների ահաւոր չափեր ընդունող հրդեհներ, որոնց առաջը հազիւ կարելի է եղել առնել։ Սակայն գաւառներից Աթէնք են հասնում դեռ եւս բազմաթիւ հեռագրեր նորանոր հրդեհների մասին։ Աթոն լերան վրայ ես սկսել է հրդեհը. պատճառը համարւում է այս տարուայ երաշտը։

—

«Ռուս. Սլովօ»-ին հաղորդում են, որ Պարսից կառավարութիւնը Կ. Պոլսի դեսպանի միջոցով կտրական բողոք է յայտնել Թիւրքիային՝ որ նա խախտել է Պարսկաստանի հողային անձեռնմխելիութիւնը։

Պարսկաստանը, եթէ այդ խախտումը շարունակուի, ստիպուած կը լինի պատերազմ յայտարարել Թիւրքիային։

—

Ստացուած տեղեկութիւնների համաձայն Փոքր Ասիայի այս տարուայ հունձը շատ վատ է։ Մի քանի տեղերում ցանքսերն ամբողջովին ոչնչացրել են մորեխները։ Թիւրքիայի այն վայրերի Թուրք ազգաբնակութիւնը, որ գրաւել են ռուսները, ամբողջովին դէպի արեւմուտք են փախչում և այդ հանգամանքը սաստիկ դժուարացնում է ապրուստը։ Թիւրքիան ուղղակի սկսել է այժմ իր քաղաքներից խմբովին դուրս քշել քրիստոնեայ ազգաբնակութիւնը և տեղաւորել թիւրքերին։ Յոյն, հայ—հազարաւոր անօթիներ մնացել են բացօթեայ դաշտերում և լեռներում։

---

## ԱԼԱՇԿԵՐՏԻ ՀԻՒՐԸ

### ԴՈԿՏՈՐ ՎԻԼԻԱՄ ՀԱՐՏՎԻԼ ԿՐԻՍՍԻ

Վերջերս Ալաշկերտից Թիֆլիս էր եկել ամերիկացի բժիշկ Վ. Հ. Կրիսսին։ Մի քանի օր մնալուց յետոյ նա վերադարձաւ Ալաշկերտ իր սկսած գործը շարունակելու, չնայած որ անհրաժեշտ կարիք ունէր հանգստանալ՝ քայքայուած առողջութիւնը կազդուրելու համար։

Վեց շաբաթուայ գործունէութիւնից յետոյ՝ բժիշկը զեկուցեց Կենտրոն. Կոմիտէի նիստին Ալաշկերտի շրջանի իր գործունէութեան մասին։

Նրա առաջին գործը եղել է տեղափոխել աւելի յարմար շինութեան մէջ որբերին, որոնք առաջ լցուած էին մի քանի գոմերում, զուրկ տարրական յարմարութիւններից։ Որբերին խնամելուց դատ՝ նա յաճախել է շրջակայ գիւղերը, քննել է հիւանդներ, խնամել է և բաժանել դեղորայք. բացի այդ՝ ընդունել է իր մօտ 386 հիւանդ։

Այդ գործունէութեանը ջերմագինս մասնակցել է բժշկի թարգման և աշխատակցուհի օրիորդ Թագուհի Կիւրճեան, բնիկ Պոլսեցի։ Ապրելով Ամերիկայում երկար ժամանակ՝ օրիորդը տիրապետում է անգլերէնին, իսկ նրա ծանօթութիւնը տաճկահայերի կեանքին՝ մեծ օգուտ է բերել բժ. Կրիսսու ձեռնարկներին։

Օրիորդ Կիւրճեանի միջոցով ես խօսակցեցի բժ. Կրիսսու հետ գաղթականական գործերի մասին՝ նրա հայեացքները իմանալու դիտաւորութեամբ։ Նա մի թափանցող հայեացք ձգեց ինձ վրայ, հասկացաւ, որ թերթի համար երևի նիւթ եմ ժողովում, խոժոռեց դէմքը և վճռականապէս մերժեց որեւէ բան պատմելու տպագրութեան համար։ Երբ ես մի շարժում արի հեռանալու մտքով, նա նորից նստեցրեց ինձ և ասաց.

—Իմ հայեացքները տաճկահայերի մասին՝ մամուլի համար չեն։ Լինելով օտար, ես նկատում եմ այնպիսի արատներ, որոնք ձեր աչքին սովորական բաներ են և չեն էլ երեւում անգամ։

Ապա բժիշկ Կրիսսին նկարագրեց այն դժոխքը, որի մէջ գտնւում է տաճկահայկական իրականութիւնը։

Մի բան, որ աւելի զբաղեցնում էր բժշկին՝ այդ Տաճկահայերի կրթական հարցն էր։ Նա զարմանում է, որ այնքան շատ աշխատող ձեռքեր կան գաղթականական գործում, բայց այնքան սակաւ աշխատանք է երեւում. իսկ կրթական տեսակէտից ոչինչ էլ չի կատարւում։ Նրա կարծիքով, ուսումից պիտի սկսել Հայաստանի վերաշինութեան գործը։ Հայ լեզուն, հայ գիրքը և հայ գիտակցութիւնը պէտք է մտցնել ամեն մի անկիւն, որտեղ կան հայեր։ Այդպէս միայն կարելի է հաւաքել և իրար կապել կիսակործան ազգի ցաք ու ցրիւ բեկորները։

Բժիշկ Կրիսսու դիտողութիւնները այդ առթիւ աւելի արժէք ունեն, որովհետև նա ազգային ժողովրդական գործիչ է և ոչ ռոճիկով ծառայող պաշտօնեայ։ Հետեւելով իւր խղճի ձայնին, նա ձգել է իր հայրենի պճնազարդ Նիւ-Եօրքը և եկել աւերած Ալաշկերտը, կանգնել է մեր տառապեալների կողքին, ոչ սակաւ տառապելով ընդհանուրի ցաւով։

Այդ տեսակէտից բժիշկ Կրիսսին պատկանում է Մարդկութեան այն ընտրեալ դասակարգին, որ չի կարող անտարբեր մնալ դէպի մարդկային ցաւերը։

Պատիւ ու յարգանք Ալաշկերտի մեր հիւր-գործչին։

Գ. Օ.

---

# ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

## ԲԻԹԼԻՍԻ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ

### ԹՐՔԱԿԱՆ ԳԱԶԱՆՈՒԹԻՒՆՆԵՐԻՑ*)

Դ.

Թէև մինչև Դատուանի կոտորածը մարդկային գազան արարածները մի քանի անգամ պատահեցին մեզ, բայց մեր դիրքեր անառիկ լինելով կարողացանք պաշտպանուել։ 300-ից աւելի հայեր ունէին 13 հրացան, 13-երորդ օրն էր, որ միմիայն կանաչեղէնով էին անցկացնում Նէմրութ լեռան կատարների վրայ։ Մեծ ուրախութիւն պատեց մանաւանդ իսպառ ուժաթափներին, երբ մի էշ գտանք, մորթեցինք ու կերանք։ 16-երորդ օրը յարձակուեցին մեզ վրայ Նէմրութի լճակի ափին։

Սուսարաթիւ թշնամու յարձակումը անդիմադրելի էր. Նէմրութի հրաբխային ժայռուտների մէջ մեր անջրպետը տաս քայլ մնաց, շարժումն ես բնազդական դարձաւ՝ երբ մահուան այդ ճըգնաժամին մեր անզէնները քարէ ընդհարման դիմեցին. քարէ ընդհարումը իւր հետեւանքն ունեցաւ, ժանդարմաներին խառն համի-

*) Տես «Համբաւաբեր» № 25։

ւազակախմբերը, քաղաքի տականքներից ժողոված և իր գլխաւորութեամբը՝ ոչնչացրել են քաղաքի 8,000-ից աւելի հայերին։ Ոչ ոքի չեն խնայել. ոչ մանուկ, ոչ ծերունի, ոչ կին։ 4—5 տարեկան մանուկների, աղջիկների, այլև պառաւ կանանց բռնաբարել են բոլորի ներկայութեամբ, ապա և սպանել։ Հարուստ մի հայ անգամ, որ իր ժամանակին Հասան Ռուստէմին մեծ փրկանք էր տուել, չի ազատուել ընդհանուրի վիճակից։ Ամբոխը, Հասանի առաջնորդութեամբ, պաշարել է նրա տունը, պահանջել դուրս բերելու տանտիրոջ սիրուն աղջիկը։ Ծերունի հայրը տեղն ու տեղը՝ ինքն է իր ձեռքով սպանել մի առ մի իր բոլոր որդիներին, իր աղջկան, ապա և անձնասպան է եղել։ Գազան կտրած Հասանի հրամանով, դեռ ևս գիտակցութիւնը չը կորցրած և որհասական հօր առաջ աւազակներից մէկը բռնաբարում է արդէն գիակնացած աղջկան։ Մի ուրիշ տեղ, ինչպէս պատմեցին ինձ, տեղի է ունեցել մի այսպիսի գազանաբարոյ տեսարան. Գետին են գցել մի երկու տարեկան հայ մանուկ, ոտքի վրան կոխել է մի թուրք, իսկ միւսը ոտքը բռնած մանուկին պատռել՝ երկու կտոր է արել։ Տապալով քանդուած գերեզմանների մէջ, միմիայն $^{3}/_{4}$—1 արշին խորութեամբ, իմ ոստիկանները գտան երիտասարդ կանանց կտոր-կտոր արած մարմինների մասեր։ Բանից դուրս է գալիս, որ Տրապիզոնը թողնելուց առաջ, թիւրք սպաներից մի քանիսը—մեծ մասամբ գերմանացիներ—զուարճանալիս են եղել իրենց զոհերովը, իսկ քաղաքից հեռանալիս, իբր շնորհակալութիւն, մանր մասերի են կտրտել աղջիկներին և թաղել»։

«Առասպելական անցեալի ոչ մի տանջանք ու չարչարանք չի կարող համեմատուել այն ամենի հետ, ինչ կրել է այստեղի հայ ազգաբնակութիւնը։ Միմիայն անհուն ծովի չափ դարձած տանջանքի գոյութեամբ է բացատրւում այն աննկարագրելի ուրախութիւնը, երբ ժողովուրդը իմացաւ թէ կոտորածներ ղեկավարող Հասան-Ռուստէմին բռնել էր ռուս իշխանութիւնը և դատարանով դատապարտել կախաղանի։ Նրան կախելը տեսնելու համար՝ նոյն իսկ նախընթաց օրուայ գիշերից և առաւօտ վաղ, շտապում էին մանուկ և ծեր, քաղաքից հեռու, այնպէս, ինչպէս ուխտի են գնում։ Դահճի պաշտօնը կատարող «թեկնածուներ» անհաշիւ էին։ Դահիճ եղող «բաղդաւոր» ընտրեալը երևաց որ, այն անձերից մէկն էր, որի տաս հոգուց բաղկացած ընտանիքը կոտորել էր տուել Հասանը։ Պէտք էր տեսնել, թէ ինչպիսի հըրճուանքով կատարում էր նա դահճի պաշտօնը... Հանգիստ սրտով կանգ էր առել նստարանի վրայ Հասանի կողքին. մեծ հանդիսաւորութեամբ վզին ձգեց թոկը, իջաւ աթոռից, ձեռքերով քաշեց չուանը, մի րոպէ դադուեց ու նայեց, սպասեց որ չարագործը իր վերջին շունչը տար, յետոյ փաթաթեց կախուածի մարմինը թոկով և առանց ետ նայելու՝ հեռացաւ...»։

—

ԼՈՒՐԵՐ

Օդեսայից հաղորդում են, որ վերջին երեք ամսուայ ընթացքում այնտեղ են հասել Թիւրքիայից 500 հայ փախստականներ, որոնք ազատուել էին թիւրքերի ձեռքից և ապրում էին առ ժամանակ Բուլղարիայում և Ռումանիայում։

* * *

«Арм. Вѣст.» հաղորդում է, որ Նիւ-Եօրկից լուր է ստացուած, թէ դեռ կենդանի են Ռուբէն Զարդարեան, Սիամանթօ, Վարուժան, Խաժակ, Շահրիկեան և ուրիշները և թէ նրանց թիւրք կառավարութիւնը Միջագետքից Պոլիս է տարել՝ դատելու համար։

—

Գերմաներէն «Լանդ. Ռունդշաու» հրատարակել է գերմանացի ուսուցչապետների և աւետարանական հոգևորականութեան ներկայացուցիչների մի կոչը՝ որ վերաբերում է Թիւրքիայի խորքերը աքսորուած հազարաւոր հայերի սոսկալի դրութեանը։

«Աքսորուած հայերի տանջանքն,—ասուած է կոչի մէջ,— առանձնապէս կանանց և երեխաներինը, բողոքում են դէպի երկինք։ Համաշխարհային պատմութեան մէջ ազգերի ամենասոսկալի դէպքերից մինն է այս։ Անհրաժեշտ է հայերին օգնել յանուն Քրիստոսի, որպէսզի պատերազմից յետոյ գերմանացիք խղճի սաստիկ խայթեր չը զգան։ Աչքի առաջ ունենալով ներկայ վայրկենի բացառիկ պայմանները, անկարելի է պատկերացնել հայ ժողովրդի ողբերգութիւնը իւր բոլոր սարսեցուցիչ ճշտութեամբ»։

Սակայն այս կոչին ստորագրել են ընդամենը չորս՝ քիչ յայտնի ուսուցչապետներ և մի եպիսկոպոս։

«Կուլտուրական» Գերմանիայի այնքան Քրիստոսասէր և քրիստոնեայ պաստորների և եպիսկոպոսների մէջ միայն չորս հոգի են գտնուել, որոնք քաջութիւն են ունեցել մի վայրկեան Աստուած միտք բերելու։ Աստուած բարաքեաթ տայ...

# Գեղարուեստ եւ Գիտութիւն

## ԽՈՑԵՑ, ԱՆՑԱՒ...

Վարդերը այսօր բոյրով անուշ.
Անուշ կը բուրեն թախիծ, ձայն, ցաւ...
Ա՜խ ո՞վ էր արդեօք աչոխ այն նուշ
Նայեց վարդերուն, խոցեց, անցաւ։

Լուսնակը այսօր գունատ, անշո՜ղ,
Անշող է, գունատ, յուշիկ լացաւ...
Ա՜խ ո՞վ էր արդեօք ժպտով մաշող
Շոյեց լուսնակին, խոցեց, անցաւ։

Ու սիրտըս այսօր անմե՜ռ, նուա՜ղ,
Անմեռ է, նուա՜ղ... վէրքեր բացաւ...
Ցնորք աղջիկն էր եկաւ, աւա՜ղ,
Եկաւ, հրդեհեց, խոցեց, անցաւ...

*Ազատ-Վշտունի*

## Գ. ԲԱՇԻՆՋԱՂԵԱՆԻ ՊԱՏԿԵՐԱՀԱՆԴԷՍԸ

Ա

Կիրակի, յուլիսի 3-ին փակուեց պ. Բաշինջաղեանի պատկերահանդէսը։

Գեղարուեստի և մանաւորապէս նկարչութեան գաղափարն այնքան թոյլ կերպով է տարածուած մեր հասարակութեան մէջ, որ պատկերահանդէսներին վերաբերւում են միանգամայն սառն անտարբերութեամբ։

Մեր հաւաքած տեղեկութիւններից պարզւում է, որ այցելուների թիւը ցուցահանդէսի ամբողջ $1^{1}/_{2}$ ամսուայ գոյութեան ընթացքում յաջող դէպքում հասնում էր 3,000-ի։ Ընթերցողը կը զարմանայ, որ բանիմաց համարուած Թիֆլիսը իր 450,000 ազգաբնակութեամբ միմիայն այդքան այցելուներ ունի։

Միւս կողմից զարմանում ենք, որ քաղաքը ունենալով մի քանի տասնեակ միջնակարգ ուսումնարաններ, ուր նկարիչների միջոցաւ աւանդւում են նկարչութեան դասեր, բայց գեղարուեստի գաղափարը աշակերտների մէջ այն աստիճան բացակայում է, որ նրանք այցելուների 5% անգամ չեն կազմում։

Այդ այցելութիւնները բնորոշում են մեր հասարակութեան ճաշակը։ Ուրեմն ովքե՞ր են այցելում. մի քանի տասնեակ տեղական

սիրողներ, ճանապարհորդներ, զինուորականներ և նկարչին համակրողներ կամ ծանօթներ։

Եթէ Թիֆլիսը Մոսկուայի նման ունենար մի Տրէտեակովսկու հռչակաւոր պատկերների թանգարան, կամ Պարիզի նման մի Լուվր կամ Վիէննայի պէս երկու հօյակապ մշտական պատկերահանդէս կամ պատկերների թանգարան, այն ժամանակ մենք կը հասկանայինք այցելուների բացակայութեան պատճառները։

Ինչպէս գրականութիւնը, քանդակագործութիւնը (սկուլպտուրան), նոյնպէս և նկարչութիւնը իբր գեղարուեստ հասել է ամենաբարձր արուեստի (տէխնիկայի), պատկերացնում է մեր առջև ոչ միայն առանձին անհատների պատկերներ, այլ ամբողջ տիեզերքը, երկինքը, երկիրը, անասունները, կենդանիները և այն, ինչ որ կոչում են նկարիչները nature morte—մեռած բնութիւնը։

Գեղարուեստի իմաստը բացատրողներն են ֆրանսացիք—այդ գեղարուեստագէտ ազգը։

Գեղարուեստի էութիւնը ամենալաւ և ամենաճիշտ բացատրութիւն տուողը Պարիզի գեղարուեստագիտութեան դպրոցի ուսուցչապետ Իպպոլիտ Տէնն է եղել։

Ըստ նորա տեսութեան առ հասարակ գեղարուեստի և մասնաւորապէս նկարչութեան էութիւնն այն է, որ նկարիչը, հեղինակը աշխատում է վերարտադրել առարկայի գերիշխող գաղափարը, ձգտելով առարկայի էական մասը պատկերացնել։

Կան ոմանք, որ էական համարում են՝ տալ հասարակութեան երևոյթների կենսունակութեան պատկերը, պատրանքը (illusion)։ Կան ուրիշներ, որ ձգտում են պատկերացնել վերացական դրամատիկը կամ որոշ առնչութեամբ հետաքրքրող երևոյթներ։ Եւ եթէ մենք պնդենք այն մտքի վրայ, որ նկարիչը պիտի արտայայտի այն կեանքի քաղցրն ու սիրելին, բնութիւնը կամ մարդիկ, իրականութիւն կամ ցնորք, պիտի ընդունենք, որ կեանքի մէջ ամեն բան արժանի չէ գեղարուեստի ուշադրութեան, թէպէտ կենսունակութեան պատկեր է, օրինակ մեր անասնական կեանքը։ Մեր կեանքի անցքերից հետաքրքրական և գեղարուեստների վրձիններին արժանին կախուած է անձնական ճաշակից։ Իսկ պատկերացնելիք մի որոշ առարկայի հետաքրքրական կողմը նշանակում է առարկայի բնորոշ, էական մասը պատկերացնել այնպէս, որ նկարչի պատկերը տեսնողը ըմբռնի առարկայի էական բնոյթը, գաղափարը այնպէս, ինչպէս ինքը նկարիչը։ Այսպիսով ամեն մի գեղարուեստական պատկեր պիտի տպաւորութիւն գործէ մեզ վրայ գաղափարով և ձևով ազդեցութիւն՝ (էֆֆէկտներ), արուեստ՝ (տեխնիկա) և գաղափարի ձևին համաչափ ու համապատասխան։

Տ. Աթարբէգեան

(Կը շարունակուի)

## † ՈՒՍՈՒՑՉԱՊԵՏ Ի. ՄԵՉՆԻԿՈՎ.

Պարիզում յուլիսի 2-ին վախճանուեց աշխարհահռչակ գիտնական-բնագէտ Ի. Մեչնիկովը, որի կորուստը ամեն տեղ, մանաւանդ Ռուսաստանում, պիտի մեծ ցաւ պատճառի։ Հանգուցեալը թէև 71 տարեկան էր, սակայն լի էր դեռ աշխուժով և անխոնջ կերպով աշխատում էր մինչև իր կեանքի վերջին օրերը։

Մեչնիկովի գիտական աշխատութիւնները շատ են և բեղմնաւոր։ Նա ոչ միայն իր կենդանաբանական, մարդաբանական և ախտաբանական կարևոր գործերով է յայտնի, այլև համարւում է, Ա. Կովալևսկու հետ, հիմնադիր անողնաշարների սաղմնաբանութեան հիմնադիրը։ Հռչակաւոր գիտնականի ջանքերը վերջերս ուղղուած էին ուսումնասիրելու կենդանական օրգանիզմի կռիւը ախտաբեր մանրէների դէմ։

Մեչնիկովը ոչ միայն հռչակաւոր գիտնական էր, այլև շատ յայտնի ժողովրդականացնող գիտութեան խօսքերի և եզրակացութիւնների։ Յայտնի է մանաւանդ նրա տեսութիւնը երկարակեցութեան մասին։

# Գրականութիւն

## ԿՈՒՌՕ *)

—Կռիւը վերջացել էր, մենք տեղաւորուեցինք, որ հանգստանանք՝ գիւղի եզրին, մի բլրակի վրայ։ Նոսր մշուշը թեթև յեղյեղում էր շրջակայ սարերին. եղանակը ցուրտ էր, անդուրեկան, գէշ տրամադրող։

Գիւղը քրդական էր, շէյխապատկան։ Շէյխը կռուից դեռ երկու օր առաջ հաւաքել էր իր կանանոցն ու բոլոր ինչքը և երկրի ներսը քաշուել։ Մնացել էր նրա երկյարկանի մեծ տունը, որ մի պալատի էր նման՝ քրդական միւս բնակարանների կողքին։

Մութը վրայ հասաւ. մենք գիշերեցինք բացօթեայ։ Առաւօտը, զարթնելուցս յետոյ՝ ես աչք ածի դէպի շէյխական շէնքը և նկատեցի, որ մի լաճուկ ման է գալիս նրա չորս կողմը՝ հանգիստ ու անփոյթ։ Ուրիշներն ևս նկատել էին նրան և տղաներից՝ Սեթօն ու Կարապետը ուղղուել էին դէպի նա։

Կուռօն տեսաւ մօտեցող տղաներին, բայց շարունակեց անտարբեր ման գալ և կանգ առաւ այն ժամանակ միայն, երբ տղաները չորս-հինգ քայլից ձայն տուին նրան։ Շուռ եկաւ, ձեռքերը տարաւ՝ դրեց մէջքին ու անխռով մտիկ տուեց։

—

Լաճուկին բերին մեզ մօտ։ «Բրդու ճուտ է, անունը հարցուցինք՝ չուզէ ասել»—զեկուց Սեթօն ծիծաղելով և մտերմաբար ձեռքը մեկնեց դէպի լաճուկը, որ ուսը թափի...

—Ռռռռ...—զիլ խնչացրեց լաճուկը և յօնքերը կիտելով նայեց ուղիղ մեր կողմը։

—«Նաւէ տը չիը՞, բազէ Յո»**)—ուրախ դարձաւ նրան մեր հրամանատարը և ձեռքով արեց որ մօտ գայ։

—«Խալիլ Ամօ-օղլի»—անմիջապէս պատասխանեց լաճուկը և առաջ եկաւ՝ բարև տուեց։

Սեթօն ու Կարապետը հրհռացին զուարթ. «հապա ինչու մեզ չասացիր»։ Բրդի ճուտը խէթ-խէթ նայեց երկուսին էլ՝ ոտից մինչև գլուխ։

—«Դու այստեղ ինչ գործ ունես»—շարունակեց հրամանատարը։ «Մօտ եկ, տեսնեմ, մի վախենար»։ Լաճուկը մօտեցաւ աւելի ու հանգիստ, առանց շփոթուելու և շտապելու, պատասխանեց հրամանատարի բոլոր հարցերին։ Ոչ աջ էր նայում, ոչ ձախ, այլ աչքերը տնկել էր հրամանատարի շրթունքներին և ամեն պատասխանից յետոյ՝ նոր հարցի սպասում։

Պարզուեց, որ Խալիլ շէյխի աւագ ձիապանի երեխան է։ Մայր չունի։ Հայրը նախորդ օրը առաւօտն էր փախել՝ վերցնելով և աղային։ Բայց տղան, այսինքն Խալիլը, ճանապարհին մի տեղ մտել էր անտառ՝ փախչող նապաստակի յետևից, մոլորուել էր, իւրայինների հետքը կորցրել և շատ թափառելուց վերջը՝ վերադարձել էր գիւղ։

Գիշերը անց է կացրել աղբրի գլխին՝ ժայռերի մէջ։ Լոյսը բացուած, շէյխի տունն է եկել։

—

Խալիլը կը լինէր հազիւ 10—11 տարեկան՝ աչքերին նայած, որոնք մանկօրէն վայրենի էին, և շրթունքներին նայած, որոնք անդադար հուպ էին գալիս՝ երեխաներին յատուկ չարաճճի կամակորութեամբ։ Դէմքը խիստ թուխ էր, ճակատը փոքրիկ ու

*) Կուռօ քրդերէն տղայ. ինչպէս որ տաճիկ տղան էլ հայ գիւղացիներից կոչւում է «լաճուկ»։ Ծանօթ. Խմբ.

**) Անունդ ինչ է, բէգ։

նեղ, բայց ամրակուռ. մազերը ածխագոյն՝ քարածուխի պէս տեղ-տեղ փայլուն։ Կուռդ հասակ ունէր՝ երկար սրունքներով, տափակ ոտնաթաթերով։ Ձայնը՝ բոլորովին մանկական ու զիլ...

—«Բա մըզանայ վախեցար վէ՞չ, վէր մինակ եկալ ըս մեր կօշտը»—կատակ արեց ջիւանշիրցի Տիգրանը և կատակի էլ ձեռով՝ աջ ձեռքի երկու մատը ուղղեց Թալիլի աչքերին. «վախմ չը՞ս քա, վեր հանց աչքերդ հանինք»...

—Ոո՜ո՜...—խնչացրեց Թալիլը կրկին և երկու քայլ յետ քաշուելով՝ բռունցքը սղմեց։

Ընդհանուր քրքիջ փրթեց տղաների մէջ։ Մէկ ուրիշը մօտեցաւ, որ երեսը շոյի, դարձեալ «ոո՜ո՜» արեց ու շուռ եկաւ, կանգնեց նրա դէմ՝ պաշտպանուելու վճռականութեամբ...

—«Ըմբօ՛»—ակամայ բացականչեց Տիգրանը, «ըռխի՜ն եշի»։ Նորից ծիծաղ։ «Ոոո՜... ոոո՜.. ոոո՜»—անցաւ բերնէ բերան և ստեղծուեց մի շատ ուրախ տրամադրութիւն։

—«Շաքար խօչի՞շ»—սրախօսեց Վանօն ու երեք կտոր շաքար մեկնեց։ Թալիլը նայեց. ապա վերցրեց ու հանգիստ-հանգիստ գրպանը դրեց։

—«Իսկ էս խօչի՞շ»—կրկին սրախօսեց Վանօն՝ ականջ քաշելու ձեն անելով...

Թալիլը բարկացաւ՝ «Ոոո՜...»

—

Այդպէս ուրախ-զուարթ ամբողջ մի ժամ անցաւ։ Թալիլն ընտելացաւ ամենքիս. և երբ քիչ յետոյ ճաշ բերին հրամանատարի համար, նա անխռով սպասեց, որ իրան էս կանչենք։ Կանչեցինք. եկաւ, չոքեց վարպետօրէն, ձեռք առաւ մի կտոր խորոված, մի կտոր հաց ու սկսեց ուտել՝ անփոյթ ու յամառ կերպով։

—«Կուռօ»—դարձաւ նրան հարիւրապետ Գրիգորը—«նանէ փլան ժըռա հալալ բը։*)

Կուռօն զարմացաւ ու գունչը տնկեց՝ լռութիւնը լարեց և կարծես հոտ էր ուզում առնել օդի միջից։ «Ձը՞լը»—անվստահ հարցրեց նա Գրիգորին և ինքն էլ հենց աւելացրեց իսկոյն՝ «նա՞յ, տու տը խապինի... տու տը խապինի»**)։

—«Աստուած վկայ, մենք հայ ենք»—փորձեց համոզել Գրիգորը լուրջ տոնով։

Թալիլը տարակուսեց, նայեց աջ ու ձախ, մտիկ տուեց հերթով հրամանատարին, Գրիգորին, Տիգրանին... մեր ատրճանակներին նայեց, փամփշտակալներին նայեց ու վերջն ասաց. «Էէ չմա սիլըէ ոյ հաեր. սիլըէ փլան թունը»***)։

Վ. Վալադեան

—

Մոսկուայից հաղորդում են թերթերին, որ Վալէրիյ Բրիւսովի խմբագրութեամբ հրատարակուող՝ ռուսերէն լեզուով «Հայ բանաստեղծութիւնը» ժողովածուն թէև արդէն պատրաստ է և տպագրուած, բայց հրապարակ կը հանուի միայն օգոստոսի 15-ից յետոյ, որովհետև ամառը գրքի տարածումը լաւ չի կարուիլ։

## ԳՐԱԿԱՆ ՆՈՐՈՒԹԻՒՆ

Լուր է ստացուած մայրաքաղաքից, որ Գիտութեանց ճեմարանը որոշել է առանձին գրքով լոյս ընծայել Տիկին Մանուշակ Աստուածատրեան Բողդանեանի մի աշխատութիւնը, որ կրում է «Հայերը և Հայաստանը XIX դարի ռուս պարբերական մամուլում» վերնագիրը։ Հեղինակը այդ աշխատութիւնը գլուխ է բերել մի քանի տարուայ ընթացքում, աջակցութեամբ հանգուցեալ Կարապետ Եզեանի։ Գործը պարունակում է 2586 յօդուած՝ զետեղուած 248 լրագրում ու ամսագրերում։ Տիկին Մանուշակ Բողդանեանը ինքն ասում է, որ իր տեսութեան մէջ կարող են պատահել բաց թողուած հատուածներ ու պակասութիւններ, որովհետև հնար չի եղել բոլոր պարբերական լրագրերից օգտուել, իսկ շատ դէպքերում հայ ժողովրդի մասին կարող էր յիշուել և այնպիսի յօդուածներում, որոնց վերնագրերը հիմք չէին տալիս ենթադրելու, թէ դրանք հայոց մասին են։ Սակայն այդպիսի հնարաւոր պակասութիւններով հանդերձ՝ տ. Բողդանեանի աշխատութիւնը գնահատելի օժանդակիչ է նրանց համար, որոնք հետաքրքրուում են դէպի հայերն ունեցած ռուս մամուլի վերաբերմունքի հարցով։ Այդ բանը մատնանշում է, ի միջի այլոց, Ն. Ե. Մառն իր զգացուած զեկուցման մէջ, որի գնահատութեան հիման վրայ և Ակադեմիան որոշեց լոյս ընծայել այդ աշխատութիւնը։

*) Տղայ, հայի հացը քեզ հալալ լինի։
**) Չէ՞, դու խաբում ես.. դու խաբում ես։
***) Հապա ինչո՞ւ զէնք ունէք. հայը զէնք չունի։

## Մամուլ

Մի ոմն «Բոռ» (оводъ), որին փրփրեցրել է հայերի կուլտուրական, եթէ ո՛չ իրական, գոնէ երազային ձեռնարկութիւնները, որի քունը խանգարել է Ազգագրական ընկերութեան 18 սրահներից բաղկանալիք ապագայ թանգարանը և որին անմարսելի է այն «յանդգնութիւնը», թէ ինչպէ՞ս են համարձակւում հայերը ազգային թանգարան երազել և կամ հայ բժիշկները իրենց յատուկ ընկերակցութիւնն ունենալ—այդ Բոռը, ահա, դարձեալ «իսկական ռուսների» «Գոլոս Կաւկազա» թերթում ուղղակի սկսել է հայհոյել հայերին, ծաղրել նրանց տառապանքները, հեգնել նրանց սպասելիքները... Ցիրաւի, ինչպէ՞ս է համարձակւում այդ «փոքրիկ անկիրթ ազգը» ունենալ լաւ հեռանկարի անուրջներ, իր ազգային ինքնուրոյնութիւնը պահպանելու մտածութիւններ։ Այդ «վայրենի, այդ փոքրիկ անկիրթ ազգիկը», ո՛չ միայն յանդգնում է թանգարաններ երազել, այլև ցանկանում է «իշխել Կովկասում, իր ձեռքն առնել հասարակական բոլոր գործերը, առևտուրն ու արդիւնաբերութիւնը՝ կրթնելով իր հաւաքած հարստութեան վրայ»։

Եւ որովհետև այդ «ազգիկը» այլքդա՞ն ագահ է՝

«Դժուար թէ կարող լինի սիրելի դառնալ իր ամենամօտ դրացիներին»...

Հասկանալի՞ է այս։ Աստելութեան կոչ անող այս խօսքերը ինչո՞վ պակաս են պոգրոմշչիկների խօսքերից։

«Հետաքրքրական է—շարունակում է թերթը—թէ անկիրթ ու վայրենի այդ ազգը իր մի բուռը ինտելլիգենցիայով մինչև ո՞րքան հեռու կը գնայ ազգային առանձնացումներով»։

Եւ այս հասկանալի է, չէ՞։ Ապա, աւելի հեռուն—

«Նոյնպէս առեղծուածային է թւում մեզ հայ թերթերի այն յոյսը, որով նրանք շուտափոյթ լուծում են սպասում իրենց ազգային անվերջ կարիքների և այդ յոյսը կապում են Կաթողիկոսի Թիֆլիս գալու հետ»...

Ահա թէ ինչ է բարբառում այդ մասին «Գոլոսը»։

«Պատերազմը դեռ իր ընկման մէջն է։ Կառավարութիւնը զբաղուած է դեռ ևս, միայն բարեյաջող վերջաւորութեան դէպքում կարելի պիտի լինի ուշադրութեան բաժին հանել այդ փոքրիկ անկուլտուրական ազգիկի պահանջներին»...

Լաւ է գիտենալ երբեմն ու յիշել, որ մեր քթի տակ կան այսքա՛ն լաւ բոռեր։

## ՎԵՐՋԻՆ ԺԱՄԻՆ
### ԶՕՐԱԿՈՉ ԱՅԼԱՑԵՂԵՐԻ

Թագաւոր կայսեր այս յունիս 25-ի Բարձրագոյն հրովարտակով՝ գործող բանակի շրջանում պաշտպանողա-

կան շինութիւններ և զինուորական հաղորդակցութիւններ կառուցանելու, նոյնպէս և պետական պաշտպանութեան անհրաժեշտ ամէն տեսակ ուրիշ աշխատութիւնների համար — ներկայ պատերազմի ընթացքում հրամայւում է զօրակոչ անել Կայսրութեան յետագայ այլացեղ արական բնակչութիւնից՝ 19—45 տարեկանները.—Աստրախանի, Սիբիրի բոլոր նահանգներից և գաւառներից, բացի թափառականներից. ծովամերձ շրջաններից, Ամուրի, Կամչատկայի և Սախալինի գաւառներից, Եակուտի, Միջին-Կոլըմի, Վերխոյանի, Վիլիւյի, Ենիսէի նահանգի Տուրուխան և Բուգուչան մասերի. Տոմսկի, Տոբոլի. Սիր-Դարիայի, Ֆէրգանի, Սամարղանդի, Ակմոլինսկ, Սեմիպալատինսկ, Սեմիրեչինսկ, Ուրալեան, Տուրգանեան գաւառներից և Անդրկասպեան երկրից, Թերեքի և Կուբանեան շրջանի և Անդրկովկասի մահմեդական ազգաբնակութիւնը (բացի զինուորական ծառայութեան ենթարկուող օս մահմեդականներից, նոյնպէս զինուորագրութեան չենթարկուող թիւրքերից և քիւրդերից), Անդրկովկասում ապրող եզիդիներից, քրիստոնեայ ենգիլոներից, քրիստոնեայ աբխազներից, տրուխմէններից, նողայներից, կալմուխներից և Ստաւրապոլի նմանօրինակ այլացեղերից։

—

Ռուս յաղթական զօրքը Կովկասեան ճակատում գրաւել է Բղի քաղաքը, որ մի կարևոր հանգոյց է դէպի Խարբերդ և Երզրում տանող ճանապարհների վրայ։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

# Յայտարարութիւններ